


# ԴՈՒ ԴԱՌՆՈՒՄ ԵՍ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ

Մտնելով մանկական կոմունիստական կազմակերպության շարքերը՝ դու հանդիսավոր երդում տվեցիր ապրել, սովորել ու պայքարել այնպես, ինչպես ավանդել է մեծ Լենինը, ինչպես սովորեցնում է մեր կուսակցությունը։ Այդ երդումը դու որոշեցիր պահել մինչև կյանքիդ վերջը։ Դա նշանակում է, որ դու հաստատ վճռել ես նախապատրաստել քեզ ակտիվ մասնակցելու աշխարհում ամենաշնորհակալ և ամենագեղեցիկ գործին՝ կոմունիզմի կառուցմանը։ Դրա համար անհրաժեշտ է դառնալ գիտակից ու սկզբունքային, պատրաստված ու կուլտուրական, աշխատանք սիրող ու գործնական մարդ։ Այդ հատկությունների հիմքը դրվում է դպրոցում, պիոներական շարքերում։ Այստեղ դու սովորում ես ապրել ու աշխատել բոլորի հետ, ընդհանուրի շահերը անձնականից ավելի բարձր դասել, հարգել ընկերների կարծիքը։

Դու ունես երջանիկ մանկություն։ Սակայն ո՞ր տղան կամ աղջիկը չի ուզում շուտ մեծանալ, ձեռք բերել հետաքրքիր մասնագիտություն և օգտակար լինել հայրենիքին։

Դեպի մեծ կյանք քեզ ուղեգիր կտա լենինյան կոմերիտմիությունը։ Դու ընդմիշտ կհիշես այն հանդիսավոր օրը, երբ շրջկոմի բյուրոյում քեզ կհանձնեն կոմերիտմիության անդամատոմսը՝ Վլադիմիր Իլյիչի թանկագին նկարը վրան։

Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել բանվորա-գյուղացիական երիտասարդության հեղափոխական ոգին, էնտուզիազմն ու ու անվեհերությունը։ Վլադիմիր Իլյիչը ցուցում տվեց հեղափոխության գործի պայքարի համար ստեղծել երիտասարդական կազմակերպություն։

Կոմերիտմիությունը ծնվեց Քաղաքացիական պատերազմի ահեղ բոցերի մեջ, 1918 թվականին։

1968 թվականի հոկտեմբերի 29-ին լրանում է Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության կես դարը։

Մեր երիտասարդության շատ սերունդներ ստացել են կոմերիտական պողպատյա կոփում. թե՛ թշնամիների դեմ դաժան ճակատամարտերում և թե՛ խաղաղ, ստեղծագործ աշխատանքի ժամանակ կոմերիտմիությունը իրեն պսակել է անթառամ փառքով։ Նա կոմունիստական կուսակցության հավատարիմ օգնականն է ու ռեզերվը։ Կոմերիտմիության կարմիր դրոշի վրա շողշողում են հինգ շքանշաններ։ Մարտական կարմիր դրոշի շքանշանը՝ քաղաքացիական կռիվների ժամանակ սպիտակգվարդիականների և ինտերվենտների դեմ ցուցաբերած հերոսության համար։ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշան՝ առաջին հնգամյակի տարիներին հարվածային աշխատանքի համար։ Լենինի երեք շքանշան՝ Հայրենական պատերազմի ահեղ ճակատամարտերում անօրինակ խիզախության և արիության, թշնամու կողմից ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման գործում անձնազոհ աշխատանքի, խոպանի նվաճման և յոթնամյակի արդյունաբերական հսկաների կառուցման համար։

Քանի՜-քանի՜ հիանալի հերոսներ է դաստիարակել լենինյան կոմերիտմիությունը, հերոսներ, որոնց կյանքը քեզ համար կարող է լավագույն օրինակ ծառայել։ Նիկոլայ Օստրովսկի, Զոյա Կոսմոդեմյանսկայա, Յուրի Գագարին՝ դրանք տարբեր սերունդների կոմերիտականներ են։ Բայց որքա՜ն ընդհանրություն կա նրանց միջև. կոմունիզմի մեծ գործին անսահման նվիրվածություն, բոցաշունչ սեր դեպի հայրենիքը, աշխատանքի անհագ ծարավ, հերոսություն՝ հանուն ժողովրդի երջանկության։

Որպես անմար ջահ կոմերիտականների մի սերնդից մյուսին են փոխանցվում հեղափոխական, մարտական և աշխատանքային տրադիցիաները։ Եվ քեզ ու քո հասակակիցներին հնարավորություն է տրված դառնալ նրանց գործի արժանի շարունակողները, գրել ձեր էջը լենինյան կոմերիտմիության հերոսական պատմության մեջ։

Սակայն այլ բան է կոմերիտմիության շարքերը մտնելու մասին երազելը, այլ բան՝ գիտակցաբար և համառորեն այդ

մեծ իրադարձությանը նախապատրաստվելը։ Եվ հենց այստեղ պետք է խոսել այն պատանիների մասին, որոնք այդ խնդիրը հասկանում են պարզունակ ձևով։ «Իսկ ի՞նչ արտակարգ բան կա դրանում,— կասի նրանցից որևէ մեկը,— ահա կլրանա իմ տասնչորս տարին, կսովորեմ կանոնադրությունը, կկարդամ, թե ինչու է կոմերիտմիությունը շքանշաններով պարգևատրվել, և դիմում կտամ...»

Եվ դիմում է տալիս առանց մտածելու, հենց այնպես, միայն ընկերներից ետ չմնալու համար։ Այսպիսիների կյանքում, կոմերիտմիության շարքերն ընդունվելով, ոչինչ չի փոխվում. առաջ հաճախում էր պիոներական հավաքույթներին, այժմ՝ կոմերիտական ժողովներին։ Իհարկե, լավ կազմակերպության մեջ, ժամանակի ընթացքում նմաններից նույնպես կարող է ստացվել լավ կոմերիտական, բայց որքա՜ն աշխատանք է պետք։

Դիմելով կոմերիտականներին, ամբողջ երիտասարդ սերնդին, Վ. Ի. Լենինը ասում էր, որ երիտասարդությունն իր ուսման, դաստիարակության, կրթության ամեն մի քայլը պետք է կապի աշխատավորների ընդհանուր պայքարի հետ՝ իր աշխատանքը, իր ուժերը պետք է ներդնի ընդհանուր գործին։

Սովետական մարդու համար ամենակարևոր այդ գիտությունը դու սկսել ես սովորել պիոներական կազմակերպությունում։ Եվ որքան ավելի խորանաս նրա մեջ, այնքան լավ կնախապատրաստվես կոմերիտմիության շարքերն ընդունվելուն։



# Բրեստի ամրոցի պաշտպանները

Ա. ՄԱԽՆԱՉ

(Բրեստի պաշտպանության մասնակից)

Երկու տարի էր, ինչ Պետյա Կլիպան ծառայում էր Բրեստի ամրոցում՝ սահմանի մոտ, Բուգ գետի ափին։ Նրա հետ կային յոթ ուրիշ պատանիներ։ Նրանք, իբրև զինվորական սաներ, հագնված էին կարմիրբանակայինների նման և, որպես ապագա զինվորականներ, մարզվում էին հրաձգության մեջ, հերթապահում, սովորում նվագել զինվորական նվագախմբում, օգնում էին մեծերին՝ սահմանն անցած լրտեսներին որսալիս։

Մի օր, լուսաբացին, հանկարծ երկինքը պատառոտվեց հազարավոր կայծակներից և դղրդյուններից. երերաց շուրջբոլորը։ Ամրոցի պարիսպները տեղ-տեղ փուլ եկան, ավերակների տակ մնացին զինվորներ, կանայք, երեխաներ, զինվորական սաներ։ Պետյա Կլիպային ու Կոլյա Նովիկովին հաջողվեց դուրս պրծնել փլվածքների արանքից։ Փոքրիկ զինվորները, հրացաններ առած, նետվեցին կարմիրբանակայինների մոտ և դիրք մտան պատերի հրակնատների ետևում։

Ֆաշիստներն արդեն ներխուժում էին ամրոց։ Խոլմսկի դարպասներից հնչեց մերոնց ոգևորող ուռան. դա առաջին հակագրոհն էր ֆաշիստների դեմ։ Նրանց գլխավորում էր 84-րդ հրաձգային գնդի կոմերիտական կազմակերպիչ, քաղղեկի տեղակալ Սամվել Մաթևոսյանը։ Հիտլերականները սկսեցին նահանջել։ Իսկ Տերեսպոլյան դարպասների մոտ հուժկու կռվով հակառակորդին ետ էին մղում 333-րդ գնդի մարտիկները, որոնց հետ էին և գնդի սաները՝ Պետյա Կլիպայի գլխավորությամբ։

Մեր սպաները, որոնք քաշարում էին, չհասցրեցին ընկնել ամրոց, որը չորս կողմից շրջապատված էր։ Ավագ հրամկազմի բացակայությունը մոտենում էր գնդի կոմիսար Է. Ֆոմինին։ Եվ ահա, նա ճամպրուկից հանեց իր շքերթային բլուզը, որի օձիքի վրա շողում էին տարբերանշանները, իսկ թևերին՝ կոմիսարական աստղը, և մեկնեց Մաթևոսյանին.

— Հագի՛ր։

Սամվելը գլխի չընկավ, թե ինչ է կամենում կոմիսարը։

— Հրամայո՛ւմ եմ, —պահանջեց սպան։ — Մի՞թե չես հասկանում, թե այսպիսի մի ժամանակ մեր զինվորների համար ինչ է նշանակում ամրոցում տեսնել ևս մեկ ավագ հրամանատարի։

Եվ Սամվել Մաթևոսյանը դարձավ Բրեստի պաշտպանության ղեկավար և. Ֆոմինի մերձավոր օգնականը։



Մաթևոսյանը նստեց զրահամեքենա և անցավ պաշտպանության գիծը՝ ծայրեծայր։ 333-րդ հրաձգային գնդի մարտիկների մեջ նա տեսավ փոքրիկ զինվորներին, որոնց տեղնուտեղը առանձնացրեց և ուղարկեց ներքնահարկ, ուր տեղավորված էին ծանր վիրավորները։

Տղաներն այստեղ հանդիպեցին իրենց դասընկերներին և գնդի սան Վոլոդյա Իզմայլովին։ Այնտեղ էին նաև Նյուրան ու Վալյան՝ երկուսն էլ նույն դասարանից։ Երեխաները երկար չդիմացան ներքնահարկում. հետզհետե բոլորն էլ դուրս եկան ու նետվեցին դեպի պաշտպանության գիծը։ Տղաները փամփուշտ էին հասցնում կռվողներին, աղջիկները վիրավորներին էին կապկպում կամ օգնում սանմաս հասնելու։

Երբ մարտը փոքր-ինչ հանդարտվեց, հրամանատարներն հավաքվեցին խորհրդակցելու, թե ինչպես հետախուզեն Տերեսպոլյան աշտարակը։ Եվ ահա հայտնվեցին Պետյան ու Կոլյան.

— Մենք կգնանք հետախուզելու։

Հրամանատարները, իհարկե, չհամաձայնեցին երեխաներին ուղարկել այդպիսի ծանր առաջադրանք կատարելու։ Իսկ նրանք որոշեցին ինքնակամ գնալ։ Ֆաշիստները նկատեցին և սկսեցին գնդակոծել։ Տղաները պահվեցին քանդված գույքերի ետևը, ապա սողալով բարձրացան երկրորդ հարկը։ Այդտեղից երևում էր, թե ինչպես են հիտլերականները նավակամուրջ սարքում գետի այն ափից այս կողմ անցնելու համար։ Տղաները իսկույն ցած իջան, զեկուցեցին.

— Տերեսպոլյան աշտարակում ֆաշիստներ կան։ Այնտեղ կա դեռևս ողջ մնացած մի զինապահեստ։ Աշտարակից տեսանք գետանցման նախապատրաստվող թշնամուն։

Ուղարկեցին մարտիկների երկու խումբ. մեկը՝ Պետյայի, մյուսը՝ Կոլյայի ուղեկցությամբ։ Նրանց հետ դուրս եկավ նաև Վոլոդյան։ Զինապահեստից վերցրին փամփուշտ, նռնակ, գնդացիր։ Գտան նաև մի ականանետ, որով հետո ոչնչացրին գետն անցնող թշնամուն և մաքրեցին Տերեսպոլյան աշտարակը։

— Պետյա, այսուհետև դու իմ կապավորն ես,— ասաց ավագ լեյտենանտ Պոտապովը,— իսկ քո օգնականը՝ Կոլյան։

Շուտով տղաներին միացավ նաև 44-րդ գնդի սան Պետյա Կոտելնիկովը, իսկ Պետյա Կլիպան դարձավ նրանց ինքնակոչ հրամանատարը։ Նրանք դիրքեր մտած սպասում էին։

Այստեղ նրանց հանդիպեց Նյուրան։

— Ի՞նչ ես անում այստեղ,— հարցրին։

— Վալյային եմ փնտրում. նա առավոտյան դուրս եկավ ծնողներին գտնելու և մինչև հիմա չի վերադարձել։

Բայց քիչ անց հայտնվեց Վալյան։ Նա դուրս եկավ այն շենքից, որը ֆաշիստների ձեռքին էր։ Նա եղել էր գերված կանանց ու երեխաների մոտ. և ֆաշիստները նրան հիմա ուղարկել էին ամրոցի պաշտպաններին առաջարկելու հանձնվել, թե չէ եղած-չեղածը հող ու մոխիր կդարձնեն։

Ամրոցի հրամանատարությունը հարցուփորձ արավ աղջկան և առաջարկեց ետ վերադառնալ (մայրը պատանդ էր մնացել այնտեղ), բայց ոչ մի խոսք չասել պաշտպանների անմխիթար վիճակի մասին։ Սակայն, երբ Վալյան իմացավ, որ հայրն արդեն զոհվել է ձեռնամարտում, այլևս չուզեց վերադառնալ։ Նյուրայի հետ նա գնաց սանմաս՝ վիրավորներին խնամելու։

***

— Ո՛չ դեղ ունենք, ո՛չ վիրակապ,— հառաչում էր «հիվանդանոցի» պետ Նատալյա Կոնտրոլևկայան:— Մինչդեռ ամեն մարտից հետո նորանոր վիրավորներ են ավելանում:

— Մի՛ վշտացեք, կճարենք,— մխիթարում էր Վալյան:

— Որտեղի՞ց կճարեք: Բոլոր սավանները, սպիտակեղենը վիրակապ ենք դարձրել:

— Հրապարակում շատ սպանվածներ կան: Իսկ ամեն մեկը, երևի, մի ծրար վիրակապ կունենա:

— Նրանց մոտենա՞լ կլինի. չորս կողմից կրակում են:

— Իսկ մենք գիշերը կգնանք: Ճիշտ չէ՞, Նյուրա:

Գիշերը Վալյան ու Նյուրան բերեցին վիրակապեր, ինչպես և մի քանի ատրճանակ ու փամփուշտներ:

Ամրոցում ջուր չկար: Ջրի գնացող մարտիկներից քչերին էր հաջողվում վերադառնալ Բուգի ափից: Բայց արի ու տես, որ Պետյա Կլիպան ամեն գիշեր ամաններին առած գետափ էր իջնում և ջրով լի վերադառնում: Հաց չկար, գոնե ջուր ունենային՝ երեխաներին ու վիրավորներին տալու և գնդացիրների ագուատները լցնելու համար:

Իսկ մորաքույր Նատալյան մտատանջվում է.

— Երեխաներ, էլ չգնաք, վտանգավոր է, մեկ էլ տեսար՝ խփեցին:



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Ի՞նչ ես ասում,— ժպտում է Պետյան,— ոչ միայն ջուր, այլև կոնֆետ կբերենք:

Նատալյա Կոնտրոլևկայան կարծեց, թե Պետյան կատակում է: Սակայն, իրոք, Պետյան մագլցեց ելավ զորանոցի երկրորդ հարկը, ուսումնասիրեց տեղանքը, գտավ նախկին մթերային խանութը և, ցած իջնելով, վերցրեց Կոլյային ու գնաց: Նրանք սողեսող, գնդակների տարափի տակ, մոտեցան խանութի ավերակներին:

— Ե՛տ դարձեք,— կանչում էին մերոնք դիրքերից:

Կես ժամ անց «հիվանդանոցում» հայտնվեցին տղաները լեցուն պայուսակով և չթի մի փաթեթ գրկած: Կոնֆետ բաժանեցին երեխաներին, վիրավորներին, չմոռացան նաև Վալյային և Նյուրային:

— Իսկ ձեզ ոչինչ չմնաց,— նկատեցին աղջիկները և ուզեցին վերադարձնել ստացածը:

— Մենք ո՛չ վիրավոր ենք, ո՛չ երեխա,— ասաց Պետյան:

Աղջիկներն էլ իրենց բաժին կոնֆետը տվեցին փոքրիկներին:

— Այ, թե թեյ-աման էլ լիներ, այս չթից շոր կկարեինք,— ասաց կանանցից մեկը:

— Իսկ մի՞թե առանց թեյ-ամանի գործը գլուխ չի գա: Այ այսպես,— ասաց Պետյան և փաթեթից պատռեց մի մետրի չափ, ափինով անցք բացեց, անցկացրեց գլուխը և բարակ ծայրերը կապեց մեջքին: Պետյայի հնարած տարազի վրա ծիծաղեցին բոլորը, նույնիսկ ծանր վիրավորները: Բայց կանայք հրաժարվեցին այդ նորաձև «զգեստից» և առաջվա պես մնացին սպիտակեղենով: Նրանց շորերը վերածվել էին վիրակապերի: Ասենք, զգեստի մասին մտածելու ժամանա՞կ էլ չկար:

* * *

Պետյա Կլիպան նստել է գնդացրի մոտ:

— Քեռի Գրիշա, ինձ էլ ընդունեք ձեր կազմում,— խնդրում է Երեմեևին:

— Չենք կարող, չէ՞ որ դու ավագ լեյտենանտի օգնականն ես:

— Ոչ, օգնական չեմ: Նա ինձ դիտմամբ է իր մոտ պահում, որ կռվի չխառնվեմ: Նա ինձ երեխա է համարում: Մինչդեռ ես համարյա տասնչորս տարեկան եմ: Իսկ դուք Պետյա Վասիլևին ճանաչո՞ւմ եք: Նա ինձանից մի քիչ է մեծ, բայց, այ, մեն-մենակ կռվում է, այնտեղ՝ ակումբի երկ-

բորդ հարկում։ Իսկ ինձ նկուղ են ուղարկում։

Պետյա Վասիլևը, իրոք, մենակ էր մնացել. ակումբի գրադարանի համար մղվող ձեռնամարտում բոլորն ընկան։ Նա գնդացրի մոտ պառկած կրակեց, դիմացրեց, մինչև մերոնք հասան։ Պետյային գտան մահացու վիրավորված, գնդացրի մոտ։ Նա 333-րդ գնդի սաներից էր։

Ամրոց ներխուժեցին ֆաշիստ հրանետայինները։ Նրանք այրում էին վիրավորներին, երեխաներին՝ կանանց...

Աղջիկներն էլ զենք վերցրին և տղաների հետ հերթապահում էին ներքնահարկի պատուհանների մոտ։

Ֆաշիստները բանբեր ուղարկեցին՝ առաջարկելով, թե՝ պաշտպանվելն անիմաստ է՝ հանձնվեք, մոտ օրերս Մոսկվան էլ կգրավվի...

Ամրոցի պաշտպանները մերժեցին հանձնվելու առաջարկը։ Միայն, երբ հրաձգությունը մի պահ դադարեց, հրամայեցին, որ կանայք ու երեխաները թողնեն ամրոցը։ Սակայն երեխաներից շատերը թաքնվեցին ավերակների մեջ ու մնացին։

— Մենք կարմիրբանակային ենք, կմնանք ու կկռվենք,— վճռեցին նրանք։

Կանանց ու երեխաներին, որոնք դուրս եկան ամրոցից, ֆաշիստները փակեցին Բրեստի բանտում։ Սպանեցին Նյուրային, նրա մորը, տատին, փոքր եղբորը, քրոջը։ Վալյան բանտում հանդիպեց մորը։ Նրանք փախան բանտից և պարտիզաններ դարձան։ Իսկ գնդի սաները դեռ երկար մնացին ամրոցում և կողք-կողքի կռվում էին կարմիրբանակայինների հետ։ Երբ զինամթերքը սպառվեց, հրամանատարը մի խմբի ուղարկեց, որ ճեղքելով անցնի կրակային գիծը։ 120 կամավորներից 9 հոգու հաջողվեց ողջ մնալ և անցնել։ Նրանց մեջ էր նաև Պետյա Կլիպան։ Նա, ատրճանակն ատամներով բռնած, լողալով անցավ Բուգը, բայց դեռ ռազմաճակատ չհասած, բռնվեց։ Հետագայում մի կերպ դուրս պրծավ բանտից և նորից եկավ Բրեստ քաղաքը։ Այստեղ նա և իր դասընկերները, պարտիզանական խումբ կազմած, ամեն կերպ վնասում, հարվածում էին զավթիչներին։ Բայց շատ շուտով շրջկալ սկսվեց քաղաքում, և նա ու Վոլոդյա Կազմինը, թողնելով Բրեստը, կտրելով հարյուրավոր կիլոմետրեր, փորձեցին անցնել ռազմաճակատը, միանալ մերոնց։ Նրանց նորից բռնեցին ֆաշիստները։ Եվ միայն հաղթա-

# ՄԵԾԱՆՈՒՄ ԵՄ ԱՐԱԳ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Այնպես լավ են անցնում
Մեր օրերը սարում.
Ամռան շոգին այստեղ
Գարուն է զով, գարու՜ն։

Ծաղիկներ ես փնջում
Դու մոտակա ձորում՝
Սարի գլխից հանկարծ
Ամպն է աhեղ գոռում.

— Է՜յ, դո՛ւրս արի ձորից,
Խաղ մի՛ անի այստեղ.
Մեկ էլ տեսար վերից
Եկավ վարար հեղեղ...

Դուրս ես գալիս ձորից,
Անձրևն էլ չի տեղում.
Վառ արև է նորից,
Ծիածանն է շողում։

— Արի գի՛րկս, արի՛,
Ծիածանն է կանչում.
Բայց երբ վազ ես տալիս,
Նա հեռու է փախչում...

Թիթեռի հետ թռչում,
Հովերի հետ պարում,
Մեծանում եմ արագ
Ես ամռանը սարում։

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

նակի օրը Պետյան կարողացավ նամակ գրել իր հարազատներին։

***

333-րդ գնդի ութ սաներից միայն մեկն է այժմ կենդանի։ Դա Պյոտր Կլիպան է։ Կլիպան այժմ բնակվում է Բրյանսկում. փականագործ է, աշխատանքի առաջավոր, ավարտել է հեռակա մեքենաշինական տեխնիկումը։ Ողջ է նաև Վալյա Զենկինան։ Նա աշխատում է Մոգիլևի գիշերօթիկ տեխնիկական ուսումնարանում որպես դաստիարակչուհի։

Նախկին պիոներներին, որոնք անձնուրաց մարտնչել են Բրեստում, սովետական կառավարությունը պարգևատրել է. Պյոտր Կլիպային՝ Հայրենական պատերազմի առաջին աստիճանի, իսկ Վալենտինա Զենկինային՝ Կարմիր աստղի շքանշաններով։

Հիմա, երբ պիոներները խնդրում են երեկվա փոքրիկ զինվորներին՝ պատմել իրենց մարտական սխրանքների մասին, նրանք համեստորեն պատասխանում են.

— Մենք ոչ մի սխրանք էլ չենք կատարել։ Մենք պարզապես օգնել ենք մեր հայրերին՝ պաշտպանելու հայրենիքը։

*Թարգմ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*

## ԲԱՐՁՐ ՍԱՐՈՒՄ

*ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ*

Այստեղ մո՜տ ենք արևին,
Այստեղ զո՜վ է ավելի,
Այստեղ ամպեր կան պես-պես,
Այստեղ հովն է փարվում մեզ։

Այստեղ ունենք մենք ճամբար,
Աղբյուր տանող մի ճամփա,
Ունենք փոքրիկ վրաններ,
Ասես Ճորից տանն ենք մեր...

Այստեղ ամպի պես սահուն
Օրը թեթև է սահում,
Բայց տեսնենք թե խնուղին,
Կկարոտենք մեր գյուղին։




*ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ*

— Կամա՛ց, կամա՛ց, չեմ կարողանում հասնել, հոգնել եմ,— բղավում էր Աշոտը։

Նրա շունչը կտրվում էր, նա իսկապես որ շատ էր հոգնել։

Իսկ Սուսանը ասես ոչինչ չէր լսում կամ չէր հասկանում։ Նա վազում էր թեթև-թեթև, թռչում առվի այս ափից այն ափը, հետո կանգնեց առվի եզերքին բարձրացած մի թմբի վրա և ասաց.

— Դու քանի՞ տարեկան ես։

Աշոտը վերջապես կարողացավ հասնել Սուսանին։ Մի քանի քայլ հեռու կանգնեց ու ասաց.

— Ես վեց տարեկան եմ։

— Դե, մինչև վեցը հաշվիր՝ հավատամ։

— Մեկ, երկու, երեք, չորս... հինգ... վեց...

— Հիմա հավատում եմ, որ վեց տարեկան ես,— ասաց Սուսանը։— Իսկ ես... Ես էլ՝ մեկ, երկու երեք, չորս, հինգ վեց... Ես էլ վեց տարեկան եմ։ Իսկ ինչո՞ւ չես կարողանում ինձ բռնել։

— Որովհետև ես չաղ եմ,— ասաց Աշոտը,— իսկ դու... լոլոզիկ։

— Ա՜խ, այդպե՞ս...— Սուսանը ցած թռավ թմբից, երկու քայլով հասավ Աշոտին ու նրան հրեց։ Այնպես հրեց, որ եթե Աշոտի փոխարեն մի ուրիշը լիներ, կընկներ, անպայման կընկներ, բայց Աշոտը չընկավ։ Աշոտը ոչ միայն չընկավ, այլև անմիջապես բռնեց Սուսանի թևից, հետո մյուս ձեռքով էլ բռնեց մազերից։ Բռնեց ու քաշեց։ Աշոտը շատ ուժեղ քաշեց Սուսանի մազերից։

— Հիմա՛ր,— ասաց Սուսանը ու լաց եղավ։

Եվ այդպես վերջացավ ամեն ինչ։

Մայրը Աշոտին պատվիրել էր Սուսանի հետ միշտ խելոք խաղալ, լավ ընկերություն անել, բայց ամեն ինչ այդպես միանգամից վերջացավ։

Սուսանը նստեց առվի եզրին, դիտմամբ, ազնիվ խոսք, դիտմամբ, ոտքերը կոշիկներով կախեց ջրի մեջ ու սկսեց լաց լինել։

Աշոտը ուզեց Սուսանին ավելի բարկացնել։ Ուզեց այնքան բարկացնել, որ նա իրեն Ճորից խփի։ Այնքան ամուր խփի, որ մոռանա լացը։

— Իսկ ես քեզանից ուժեղ եմ,— ծաղրանքով ասաց նա։

Բայց Սուսանը շարունակում էր լաց լինել։

— Ես քեզանից վեց տարով մեծ եմ, դրա համար



էլ ուժեղ եմ,— փչեց Աշոտը, բայց մեկ է, Սուսանը շարունակում էր լաց լինել...

Հետո Սուսանը այդպես էլ վեր կացավ ու ցեխոտված, թաց ոտքերով, լաց լինելով, գնաց տուն: Պարզ էր, գնաց գանգատվելու:

Հիմա Աշոտի մայրը ամեն ինչ կիմանա, դուրս կըգա, կբարկանա նրա վրա: Մի խոսքով, Աշոտը բախտ չունի: Եկել են քաղաքից այս ամառանոցը, ու այստեղ Աշոտի տարիքի ամենամոտիկ խաղընկերը Սուսանն է: Աշոտը բախտ չունի: Եթե բախտ ունենար, ապա այստեղ մի կարգին տղա ընկեր կունենար:

Եվ Աշոտը գլուխն առավ ու գնաց:

Նա շատ հեռու գնաց: Անցավ առվի վրայով, բարձրացավ դիմացի սարալանջը, գնաց, գնաց, մինչև հասավ անտառը: «Է՜հ, թող կորչեմ,— մտածում էր Աշոտը: Մեկ է, մաման բարկանալու է վրաս, պատժելու»:

Անտառում շատ ծառեր կային ու մինչև անգամ Աշոտից էլ բարձր շատ ծառեր կային:

«Ես խուլ անտառի մեջ եմ,— մտածեց Աշոտը,— ես կկորչեմ ու ինձ կարող է չգտնեն, հետո ամենքին հարցուփորձ կանեն ու կիմանան, թե ինչու եմ ես կորել»:

Հետո Աշոտը նստեց մի ծառի տակ, խոտերի վրա ու երկար մտածեց.

«Իսկ ինչո՞ւ եմ ես կորել»:

Աշոտը չգիտեր, թե ինչու է ինքը կորել, բայց երբ մտածում էր, որ ինքը կորել է՝ լացը ուղղակի գալիս էր:

Բայց նա լաց չեղավ, որովհետև Սուսանի նման տզզան աղջիկ չէր, ոչ էլ նրա նման խաբարբզիկ, այլ վեց տարեկան տղա էր:

«Աղջիկները խաբարբզիկ են, նրանց հետ չարժի խաղալ»,— մտածեց Աշոտը, հետո վեր կացավ ու նորից գնաց: Միայն թե այս անգամ նա քայլեց դեպի հեռվում երևացող գյուղի տները: «Կգնամ, ինձ համար մի տղա ընկեր կճարեմ, էլ Սուսանի հետ չեմ խաղա»,— մտածեց նա:

Նա քայլեց դեպի գյուղ, քայլեց, քայլեց ու մեկ էլ տեսավ, որ դիմացից գալիս է Սուսանը:

Սուսանենք ու իրենք նույն տան մեջ էին ամառանոց վարձել ու համարյա թե միասին էլ ապրում էին: Երբ Սուսանենք մի լավ բան էին ունենում, Սուսանի մայրիկն անմիջապես կանչում էր.

— Աշոտ, արի մեր տուն:

Երբ Աշոտենք էին մի լավ բան, ասենք, շատ համեղ միրգ ունենում, Աշոտիկին մայրը ասում էր.

— Գնա՝ Սուսանին կանչիր...

Ա՜յ, թե ինչ մոտ հարևաններ էին Աշոտենք ու Սուսանենք: Իսկ հիմա Աշոտը ուզում էր գնալ իր համար գյուղից մի տղա ընկեր ճարել ու ճանապարհին տեսավ, որ դիմացից գալիս է Սուսանը:

Սուսանի շրթունքներն ու թշերը կարմիր էին, կարծես ներկ էր քսել:

— Շո՜ւտ, գնա տուն,— դեռ հեռվից ասաց Սուսանը:

Աշոտը իսկի նրա երեսին չէր էլ ուզում նայել: Պարզ է, գանգատվել է Աշոտից ու հիմի Աշոտին կանչում են պատժելու: «Ոչի՜նչ,— մտածում էր Աշոտը,— ոչի՜նչ... Թող ես տուն գնամ, թող ինձ տուն կանչեն ու թող ես տուն գնամ... Թող ինձ պատժեն ու թող Սուսանը ինձանից գանգատված լինի... Ոչի՜նչ...»

Ու գլուխը կախ քայլեց տուն:

— Ի՞նչ է,— ասաց նա մորը...

— Քեզ Սուսանի մայրիկն էր կանչում,— ասաց նրան մայրը...

Աշոտը մի քիչ թեթևացած սրտով գնաց Սուսանենց սենյակի կողմը: Դե հո Սուսանի մայրիկը նրան այնպես խիստ չէ՞ր պատժի, ինչպես իր մայրիկը...

Նա զգույշ մտավ այն սենյակը, որ վարձել էին Սուսանենք:

Սուսանի մայրիկը Աշոտին տեսավ թե չէ, ասաց.

— Որտե՞ղ էիր կորել, արի՛...

Աշոտը գլուխը կախ մոտեցավ...

— Նստի՛ր,— ասաց Սուսանի մայրը և Աշոտի առաջ դրեց մի լիքը ափսե մորու մուրաբա:— Դե կե՛ր... Սուսանը այնքան կերավ, որ կոկորդը վառեց, իսկ քեզ փնտրեցինք՝ չգտանք...

Աշոտը շատ էր զարմացած: Բայց Աշոտը մորու մուրաբա չէր կերել: Գիտեր, որ դա շատ համեղ բան է լինելու: Նա վերցրեց գդալը. մի քիչ կերավ: Ճիշտ որ շատ համեղ բան է այդ մորու մուրաբան: Մի գդալ էլ կերավ՝ ախր շատ համեղ է, է՜... Հետո, շրթունքները լիզելով, ասաց.

— Իսկ աղջիկները միշտ լացկան են լինում:

Սուսանի մայրը ասաց.

— Աղջիկներին նեղացնել չի կարելի:

— Աղջիկները խաբարբզիկ են լինում,— բերանը լիքը մուրաբա, ասաց Աշոտը:

— Ա՜յ, այդ մեկը չգիտեի,— ասաց Սուսանի մայրիկը,— ես առաջին անգամ եմ իմանում, որ աղջիկները կարող են խաբարբզիկ լինել...

Աշոտը շատ զարմացավ: Նա այնքան զարմացավ, որ սկսեց ավելի արագ-արագ ուտել մուրաբան: Նա այնքան էր շտապում, որ նույնիսկ մի գդալ մուրաբա թարս գնաց, ու նա սկսեց հազալ: Քիչ էր մնում խեղդվեր:

— Ուրեմն Սուսանը լացկան չի՞,— երբ հազը վերջացավ, հարցրեց Աշոտը:

— Լացկան չի,— ասաց Սուսանի մայրիկը:

— Ուրեմն նա չի՞ գանգատվել... նա խաբարբզիկ չի՞,— նորից հարցրեց Աշոտը:

— Սուսանը խաբարբզիկ չէ,— լուրջ ասաց Սուսանի մայրիկը:— Ես հաստատ գիտեմ, դեռ չի պատահել, որ նա մեկն ու մեկից գանգատվի:

Աշոտը նորից զարմացավ: Նա զարմացավ և ուրախացավ: Այնքան ուրախացավ, որ մուրաբան կիսատ թողած դուրս վազեց, իսկ մորու մուրաբան նրան շատ էր դուր եկել: Նա դուրս վազեց ու տեսավ, որ Սուսանը մենակ խաղում է: Նա մի ոտքի վրա թռչկոտում էր:

— Սուսա՜ն,— դեռ հեռվից բղավեց Աշոտը,— Սուսա՜ն...

— Խաղը շարունակե՞նք,— ասաց Սուսանը,— դե՝ բռնիր ինձ...

Ու որովհետև Սուսանը բոյով աղջիկ էր, արագ էր վազում:

Աշոտը ուզում էր ասել՝ արի հիմա էլ ուրիշ բան խաղանք, բայց Սուսանն արդեն վազում էր: Աշոտը նրան կհասնի ու կասի՝ դե, արի մի ուրիշ բան խաղանք, քարկտիկ կամ դասարան, կամ կարելի է գնդակը բերել ու խաղալ. բայց որովհետև Սուսանը վազում էր, Աշոտը նույնպես վազեց, նրան հասնելու համար:

Հետո վազելիս, Աշոտը հիշեց, որ քիչ առաջ ինքը քաշել է Սուսանի մազերից: Ճիշտ է, Սուսանը ավելի արագ է վազում, բայց դե, Աշոտն էլ ավելի ուժեղ է ու քաշել է Սուսանի մազերից: Սուսանը տզզացել է, գնացել տուն, բայց տզզոցը հետը չի տարել ու մայրիկին էլ ոչինչ չի ասել այդ մասին: Հետո Աշոտը հիշեց, թե ինչպես մայրիկը մի անգամ հայրիկին պատմում էր.

«Արուսը ինձ շատ էր նեղացրել, դրա համար էլ որպեսզի սիրտս շահի՝ այս ծաղիկները բերեց»...

Աշոտը վազում էր Սուսանի ետևից ու երբ հիշեց այդ, տեսավ, որ ճանապարհից դուրս կարմրին են տալիս խոշոր-խոշոր կակաչներ: Նա կանգ առավ մի մեծ, կարմիր կակաչ քաղեց ու շարունակեց վազել Սուսանի ետևից: Նա մեկ ուզում էր Սուսանին խնդրել, որ նա կանգ առնի, ախր Աշոտը չի կարող այդքան արագ ու շատ վազել, բայց մեկ էլ մտածեց, որ ինքը տղա է, ուժեղ, և անպայման պետք է հասնի Սուսանին:

Ու նա նորից շարունակեց վազել:

Սուսանը վազելիս թռչում էր առվի մեկ այս ափը, մեկ՝ մյուս:

Եվ Աշոտը նույնպես թռչում էր առվի մեկ այս ափը, մեկ՝ այն:

Շա՜տ շա՜տ վազեցին:

Հետո մեկ էլ Սուսանը ասաց.

— Ես հոգնեցի...

Ու նստեց առվի ափին, խոտերի վրա: Եվ այստեղ Աշոտը հասավ նրան:

— Իսկ ես իսկի չեմ հոգնել,— ասաց Աշոտը:— Ես իսկի չեմ հոգնել: Ես չէի էլ ուզում վազել ու չեմ հոգնել: Ես վազում էի, որովհետև ուզում էի քեզ տալ կակաչը...

Ու Սուսանին մեկնեց իր քաղած կակաչը:

Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ





# ՄԱՅՐ ՁԻՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Մամռոտ քարափն է ծեծում
Վարարած մի գետ,
Ճերմակ ձին է արածում
Իր մտրուկի հետ։
Օրը տաք է ու խաղաղ,
Արևն է կիզում,
Արածում է ձին ուրախ,
Մտրուկին լիզում։
Խմբով իջնում են գետափ
Հավքերը նորեկ,
Շողշողում է պարզությամբ
Անուշ մի ցերեկ։
Արածում են երկուսով,
Ուրախ վրնջում,
Նրանց գարնան՝ մեղմ ու զով
Աղբյուրն է կանչում։
Եվ գնում են լուռ նրանք,
Որ ջուր խմեն շուտ,
Դեմը կածան կա բարակ,
Ներքևում՝ անդունդ։
Մեկ էլ մայր ձին անհանգիստ
Երբ նայում է ետ,
Տեսնում է գայլն է գալիս
Դեպի Ջորագետ։
— Վա՛յ, փախիր, իմ ոսկեծամ,
Մոտիկ է արդեն,
Ես կածանում կմնամ,
Որ ճամփան փակեմ։
Ես կածանում այս նեղլիկ
Կկանգնեմ իսկույն,
Որ դու փրկվես, իմ բալիկ,
Ապրես աշխարհում։—
Եվ մնում է մայրը ձեր,
Չի հասնում էլ տուն...
Եվ չեմ ուզում ձեզ ասել,
Թե ինչ է լինում...

Հիմա չկա էլ այն ձին
Իր բարի սրտով,
Բայց մտրուկը հիշում է
Մորը կարոտով։
Հիշում է նա ու կարծես
Հասկանում լռին
Եվ աչքերով խոր ու հեզ
Նայում է ձորին։







# ԱՆՏԱՌԻ ԵՐԳԸ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԻՆՅԱՆ

Ո՛չ մի սաղարթ չէր սրսփում,
Ո՛չ մի սեզիկ չէր սվսվում,
Ո՛չ մի թռչուն չէր ծվծվում,
Երգն անտառի դեռ չէր ծնվում։
Կարծես այդպես հազար տարի
Քար էր կտրել ձայնն անտառի,
Եվ խուլ-համր էր ասես մորուց
Ծեր անտառը մամռամորուս.
Մրափում էր արծաթ մայրին
Լռության մեջ արծանային,
Ու անշարժ էր կաղնին տարեց՝
Բնի վրա քանի դարեր...
Եվ անտառն էր դեռ սսկվում,
Ոչ մի սաղարթ չէր սվսվում,
Եվ վերջապես լոկ մի շշուկ,
Հետո ինչ-որ թփի շրշյուն,
Հետո սարսուռ սաղարթների,
(Ի՞նչ կա այստեղ սարսափելի),
Ինչ-որ թռչնի սուլոց միայն,
Հետո ընկնող տերև մի լայն,
Այնուհետև՝ մի միածույլ
Թռչնահամերգ, սաղարթասույլ...
Զրնգում էր զեփյուռը զիլ՝
Զանգուլակներ ասես վզին,
Փայտփորիկն էր զիլ թակթկում,
Մեներգում էր երգիչ կկուն,
Սկյուռիկն էր ջարդում կաղին,
Խշխշում էր տարեց կաղնին,
Կաչաղակը կչկչում էր,
Եվ ուրուրը կոնչում էր,
Մռնչում էր մայրիկ արջը՝
Թաթերի մեջ մեղրի փարչը...
Ու չէր լռում երգն անտառի,
Առանց խոսքի, առանց բառի։











Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՖԵԴԵՐԻԿՈ ԳԱՐՍԻԱ ԼՈՐԿԱ

Նա ծնվել է Իսպանիայի ծայր հարավում և այն ամենը, ինչ տեսել ու լսել է մանկուց, նրան զարմանահրաշ է թվացել: Նրա անունը, որ սովորական է այն վայրերի համար, ուր նա մեծացել է, դարձել է մեր դարի պարծանքը: Ֆեդերիկո Գարսիա Լորկա...

Կանաչ բլուրների վրա սպիտակ տներ, ստվերաշատ ոլոր-մոլոր փողոցներ, փորագրված անհամար պատշգամբներ և դեռևս հազար տարի առաջ քմահաճ կամուրջներով զարդարված լեռնային գետերի խոխոջյուն, կուրացուցիչ արև ու թանձր ստվերներ: Քաղաք, ուր իր պատանեկությունն է անցկացրել Ֆեդերիկոն:



Արաբական հինավուրց ամրոցով է պսակված Գրանադայի մոտ վեր խոյացող լեռը՝ Խեներալիֆեն: Վաղուց արդեն արտաքսված են արաբ տիրակալները, բայց ամրոցը չի ամայացել: Այնտեղ բնակություն են հաստատել լեգենդները: Ցերեկը խորհրդավոր ու մունջ, նրանք կենդանանում են գիշերվա ժամերին: Քամուց նվաղուն խոնարհվում են ծառերը և ինչ-որ տեղ բոլորովին մոտիկ, խավարից առանձնանալով, մարդկային ձայնը լալով ու ծիծաղով պատմում է այն մասին, ինչը երբեք վերջ չունի՝ կյանքի ու մահվան, գեղեցկության ու սիրո մասին: Պատմում է գիշերին ու նրանց, ով այստեղ է գալիս իրեն լսելու, այնպես, ինչպես գրանադյան գիշերը լսելու էր գալիս Գարսիա Լորկան:

Նա ուներ ժողովրդական երգիչների ձայնի նման ձայն և օժտված էր վարպետ դաշնակահարի շնորհքով: Իր հայրենի քաղաքում նա հաճախ էր համերգներ տալիս, և դահլիճը միշտ լեփ-լեցուն էր լինում, իսկ ունկնդիրները ծափահարում էին շռայլորեն: Բայց նա ոչ երգահան դարձավ, ոչ էլ դաշնակահար: Նա քիչ երգեր չի գրել, բայց բոլորն էլ իր սեփական բանաստեղծությունների վրա՝ խորապես անկեղծ ու հուզիչ, ինչպես երաժշտությունը: Նա կարողացավ երաժշտությանը տիրել խոսելու բանաստեղծության լեզվով: Նա՝ Իսպանիայի բանաստեղծը, Ֆեդերիկո Գարսիա Լորկան:

Նրա բանաստեղծություններից յուրաքանչյուրն ասես մշտապես ապրել է ժողովրդի սրտում, դուրս է եկել նրանից և վերադարձել նրան: Նա չի արտագրել ժողովրդական երգերը, չի ընդօրինակել: Նա առել է չափածը և նրբորեն հաղորդել այն, ինչ ունկնդրել է իր հոգում, իսկական իսպանացի Գարսիա Լորկայի հոգում:

Նա շրջել է ողջ Իսպանիան, եղել է նրա ծայր հյուսիսում, շրջել է ոտքով, գննելով նրա յուրաքանչյուր գյուղի դեմքը: Ոմանք կասկածում էին, արդյո՞ք գյուղացիները կհասկանան նրա բանաստեղծությունները, կընդունեն, բարդ չե՞ն թվա դրանք նրանց: Բայց իսպանացի գյուղացիները հիշում են նրա բանաստեղծությունները՝ այնպես, ինչպես հիշում են ժողովրդական երգերը: Նա ստեղծեց երիտասարդական շրջիկ թատրոն, որպեսզի հենց դաշտում խաղան անցյալի մեծ գրողների պիեսները: «Որովհետև ամեն մի իսպանացի պետք է իմանա, թե ինչ են նրան ժառանգություն թողել Սերվանտեսն ու Լոպե դե Վեգան».—այսպես էր գրում շրջիկ թատրոնի խնդիրների մասին նրա դիրեկտոր Ֆեդերիկո Գարսիա Լորկան:

Նա ինքը և՛ պիեսներ էր գրում, և՛ ստեղծում էր նրանց դեկորացիաները, արտահայտիչ ու անմիջականորեն պարզ, ինչպես մանկական նկարներ: Նա զվարթ էր, սրամիտ և միշտ ընկերներով շրջապատված: Նա հասավ փառքի ու ճանաչման և հաճույքով օգնում էր նրանց, ովքեր նոր էին մուտք գործում պոեզիա: Ահա մեկը նրա նամակներից. «Ձեր առաջին, դեռևս ոչ ուժեղ բանաստեղծություններում կան մեր Իսպանիայի մասին սիրո նոր, դեռևս չասված խոսքեր: Ի նկատի ունեցեք ինձ. ես Ձեր բարեկամն եմ: Ֆեդերիկո Գարսիա Լորկա»:

Անհանգիստ էր դրությունն Իսպանիայում: Երկիրը բաժանվել էր երկու լագերի՝ ժողովրդի բարեկամների և թշնամիների: Նա քաղաքական ոչ մի հայտարարություն չէր անում: Բայց առանց դրան էլ պարզ էր, եթե նրա բանաստեղծություններն այդքան հարկավոր են ժողովրդին, ուրեմն ժողովրդի հետ է Գարսիա Լորկան:

Որոշեցին նրան վերացնել ասպարեզից: 1936 թվականի օգոստոսի 19-ին ֆրանկոյականները՝ ֆաշիստների հոգևոր եղբայրները, առանց դատի

ու քննության, իրենց նեղություն չտալով անգամ որևէ հանցանք վերագրել նրան, լուսաբացին գնդակահարեցին նրան ճանապարհամերձ թփերի մոտ: Այդ հանցագործության լուրը տարածվեց աշխարհով մեկ: Իսկ այն մարդը, որին սպանել էին ֆրանկոյական սրիկաները, ընդմիշտ մնաց Իսպանիայի սրտում: Եվ նա միշտ կմնա իր երկրի ժողովրդի հետ՝ նրա որդին ու բանաստեղծը՝ Ֆեդերիկո Գարսիա Լորկան:

Մ. ՅԱԽՈՆՏՈՎԱ

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՃԱՄՓՈՐԴՈՒԹՅԱՆ ԵԼԱՎ ԽԽՈՒՆՋԸ ԵՎ ՈՒՄ ՀԱՆԴԻՊԵՑ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

ՖԵԴԵՐԻԿՈ ԳԱՐՍԻԱ ԼՈՐԿԱ

Թրգմ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ինչ-որ մի անտառ մանկորեն խաղաղ.
Մանկորեն նուրբ է օդն առավոտի.
Ծառերը թեքում գլուխներն իրենց.
Իրենց ձեռքերը պարզում են հողին:
Բարակ մշուշ է իջել դաշտերին.
Արտերին բարակ մշուշ է իջել.
Սարդերն օդի մեջ
Իրենց մետաքսյա ցանցերի համար
Հյուսում են բարակ մետաքսաթելեր,
Որ զարդում են որպես շողշողուն
Համրիչներ կապույտ ապակու վրա:



Մոտիկ, շատ մոտիկ, բարդիների տակ,
Առվակն իր բարակ երգն է ղողում
Ու վազում կանաչ խոտերի միջով.
Եվ խխունջը յուռ,
Խաղաղ կածանի խաղաղ բուրժուան,
Այդ պարզամիտ խոնարհն ու գյու,
Նայում է արձակ, անհուն աշխարհին:
Իր իշխանության թևերն է փռել
Շուրջը անխռով մի հանդարտություն:
Թարուն հասաչից խխունջն անվրդով
Եվ, թողնելով տուն ու տնտեսություն,
Ճանապարհ ընկավ,
Որ գնա տեսնի ծայրն արահետի:
Եվ գնաց: Գնաց ուղևորը մեր...
Սողալով հասավ այնպիսի մի տեղ,
Որտեղ աճում են եղինջ ու բաղեղ,
Եղինջ ու բաղեղ հյուսվում են իրար:
Այնտեղ երկու գորտ վայելքոչ կերպով
Կողք-կողքի նստել



Եվ առավոտյան արևգալի տակ
Տաքանում էին:
«Այս բոլոր նորոգ երգերն աշխարհում,
Գորտերից մեկը այսպես բրթմնջաց,—
Հավատա, ոչ մի բան կոպեկ չարժեն»:
«Ա՜խ, բարեկամս,—
Պատասխան տվեց՝ արարված տեսքով
Ու կույր աչքերով մյուս գորտը նրան.—
Երբ ես դեռ ջահել մի աղջիկ էի,
Հավատում էի, որ Աստված մի օր
Մեր երգը լսել կբարեհաճի
Ու մեզ կխղճա:
Այն օրից ի վեր ապրել եմ երկար
Ու ոչ մի բանի էլ չեմ հավատում.
Երգեր չեմ երգում էլ բոլորովին...»

Գանգատվում էին գորտերը այսպես
Եվ ողորմություն էին խնդրում
Անպատկառ դեմքով այն կայտառ գորտից,
Որ թռչկոտում էր խոտերի վրա:

Եվ այս մթին անտառի առաջ
Հոգնած խխունջը կանգ առավ, մնաց:
Ուզում էր ճչալ: Չի կարողանում:
Ու մոտ են վազում գորտերը պառավ:
«Թիթե՞ռ է, ի՞նչ է»,



Կույր գորտը հարցրեց:
«Մի՞թե չես տեսնում եղջյուրները դու,—
Պատասխան տվեց մյուսը նրան.—



Տես, խխունջ է սա: Ասա մեզ, խխունջ,
Հեռվի՞ց ես գալիս»:



«Ապրում եմ, ավա՜ղ, բավական հեռու
Եվ ուզում եմ շուտ տուն վերադառնալ»:
«Խխունջներն, այո, շատ են վեհերոտ,—
Կույր գորտը ասաց,—
Դու գիտե՞ս երգել»: — «Երգել չգիտեմ»,—
Պատասխան տվեց խխունջը նրան:
«Իսկ աղոթք անե՞լ»:
«Չէ, ոչ ոք ինձ չի սովորեցրել»:
«Իսկ հավատո՞ւմ ես,
Խխունջ, դու կյանքին հավիտենական»:
«Իսկ ի՞նչ բան է դա»:
«Այդ այն է, թե՝
Ապրել հավիտյան՝ ծաղկած ափերով
Մաքուր գետի մեջ,
Որտեղ առատ է մանանան հրաշալի»:
«Վա՜հ, ի՞նչ ես ասում: Իսկ իմ հանգուցյալ
Տատիկն ասում էր, երբ մանուկ էի,
Թե մահից հետո ես պիտի ապրեմ
Ամենից բարձր ծառերի բնբուշ
Թևերի վրա»:
«Տատդ եղել է հերետիկոս կին:
Մենք ճիշտ ենք ասում:
Թե չես հավատում, կհարկադրենք,
Որ մեզ հավատաս»,—
Զայրացան գորտերն ու աղմկեցին:
«Ես ինչի՞ համար դուրս եկա տանից,—
Լալիս է խխունջն ու շարունակում.—
Ես հավատում եմ հավիտենական
Կյանքին, իհարկե, ճշմարիտ եք դուք»:
Եվ գորտերն այնժամ
Մտախոհաբար թողին հեռացան,
Իսկ խխունջը մեր սաստիկ վախեցած
Շտապեց սողալ խորքերն անտառի:

Երկու գորտերը, աղբանների երկու,
Սֆինքսների պես, լուռ անշարժացան:
Նրանցից մեկը հարցրեց մյուսին.
«Հը, հավատո՞ւմ ես,
Ասա, դու կյանքին հավիտենական»:
«Ես չեմ հավատում»,
Պատասխան տվեց կույր գորտը տխուր:
«Իսկ ինչի՞ համար խխունջ-խաթունին
Ասացինք՝ անշուշտ պետք է հավատալ»:




















«Նրա համար, որ... Ինքս էլ չգիտեմ,—
Հառաչեց կույր գորտն ու շարունակեց.—
Առանց հուզմունքի չեմ կարող լսել,
Թե ինչպես են մեր զավակներն ազնիվ
Առվի մեջ նստած անուշ կռկռում
Եվ փառաբանում մեծն արարչին»:
Իսկ խեղճ խխունջը տուն վերադարձավ:
Տանում էր նրան կածանն ամայի:
Անշարժացել էր տաքացած քամին
Ձիգ բարդիների սաղարթների մեջ:
Եվ խխունջն այստեղ
Կարմիր մրջյուններ տեսավ իր ճամփին,
Հանդիպեց նրանց:
Ձեռք ու ոտ ընկած, իրար հրելով
Այդ մրջյունները քարշ էին տալիս
Մի կիսակենդան մրջյունի մարմին,
Որի բեղերը խիստ ջարդված էին:
Եվ բացականչեց խխունջը հանկարծ.
«Մրջյո՜ւն-մրջնիկներ, կա՛նգ առեք մի պահ:
Ինչի՞ համար եք դուք ուզում պատժել
Ձեր արյունակից եղբորը այդպես:
Ասացեք տեսնեմ նա ի՞նչ է արել»:
«Ե՛ս, ես կպատմեմ ձեզ արդարացի»:
«Պատմիր դու, իրոք, դու մի վախենա»:
Եվ կիսակենդան,
Կիսամեռ մրջյունն ասաց մեղմաբար.
«Ես, գիտե՞ք, թե ինչ, ես աստղեր տեսա»:



«Աստղե՞ր... ի՞նչ աստղեր, ինչե՞ր են դրանք», —
Աղաղակում են
Մրջյունները խիստ մի վրդովմունքով:
«Աստղե՞ր»,—
Հարցրեց խխունջն էլ մտախոհաբար:
«Այո,— ասում է մրջյունը,— աստղեր,
Ես աստղեր տեսա, ինձ հավատացեք,
Ես վեր բարձրացա,
Ես եղա այնտեղ,
Ամենաբարձր բարդու կատարին,
Եվ հազարավոր շողարձակ աչքեր
Իմ մթությունը շամփրեցին այնտեղ»:
Եվ հարցնում է խխունջը նորից.
«Բայց ի՞նչ բաներ են աստղերն իսկապես»:
«Լույսեր են դրանք,
Որ շողշողում են մեր գլխի վերև»:
«Բայց մենք չենք տեսնում,
Մենք բոլորովին չենք տեսնում նրանց»,—
Խիստ առարկում են մրջյուններն այսպես

Սաստիկ զայրացած:
Իսկ խխունջը մեր այսպես է ասում.
«Տեսողությունս թույլ է չափազանց,
Խոտերից այն կողմ ես բան չեմ տեսնում»:
Եվ մրջյունները աղաղակեցին՝
Թափահարելով բեղիկներն իրենց.
«Մենք քեզ կմորթենք, դու ծույլ ես անչափ,
Անտաշ ու ցած: Դու պետք է տեսնես,
Առանց նայելու բարձր երկնքին»:
«Ես աստղեր տեսա, շողշողուն աստղեր»,—
Պատասխանում է հոգնած, վիրավոր
Մրջյունը նրանց:
Եվ խխունջն ասաց.
«Թողեք, եղբայրներ, թողեք դուք նրան,
Անցեք ձեր ճամփով:
Նա հավանաբար երկար չի ապրի
Այս լույս աշխարհում»:
Եկավ ժիր մեղուն
Օդը ճեղքելով թևերով մեղրոտ:
Մրջյունը արդեն տալիս է հոգին,
Նա շնչում է թարմ օդն երկնային,
Եվ շշնջում է.
«Իմ նման ես դու եղել, մեղու.
Դեպի աստղերը տար ինձ քո թևին»:

Տեսնելով, որ նա մեռած է արդեն,
Մրջյուններն անհոգ թողնում են գնում:

Խխունջը թարուն հոգոց հանելով,
Ծռված, մոլորված սողում է հեռու,
Եվ նրա առաջ բացվում է կարծես
Հավերժությունը մի ակնթարթով:
«Արահետը մերձ ու վախճան չունի,
Ճիշտ որ նա դեպի աստղերն է տանում.—
Բացականչում է խխունջը տխուր.
Միայն ես երբեք չեմ հասնի նրանց,
Էլ պիտանի չեմ ես դրա համար,
Լավ է մոռանամ աստղերը հավետ»:

Կախվում է մեգը դաշտերի վրա,
Եվ արեգակը դողդոջ շողերով
Անցնում է ահա լեռների ետև:
Իսկ խխունջը մեր, խխունջը խոնարհ,
Խաղաղ կածանի խաղաղ բարդենին,
Ծռված, մոլորված
Մի տարօրինակ, մի խոր թախիծով
Նայում է արձակ, անհուն աշխարհին:

Թարգմ. Հ. ՍԱՀՅԱՆԻ



# Հերետիկոսի ԹԻԿՆՈՑԸ

ԲԵՐՏՈԼԴ ԲՐԵԽՏ

Ոմն Մոչենիգո, մի վենետիկցի պատրիկ, Ջորդանո Բրունոյին հրավիրեց իր տուն, որպեսզի սա նրան իրազեկ դարձնի ֆիզիկայի ու մնեմոնիկայի գաղտնիքներին: Բրունոն մի քանի ամիս ապրեց ու սնվեց նրա մոտ, փոխարենը տալով խոստացած դասերը, բայց սև մոգության արվեստի փոխարեն, որին Մոչենիգոն հույս ուներ տիրապետել, գիտնականն ավանդում էր զուտ ֆիզիկա:

Տեսնելով, որ իր սպասելիքները չեն արդարանում, Մոչենիգոն Բրունոյին մատնեց ինկվիզիցիայի ձեռքը: Նա գրեց, որ այդ անարժան, երախտամոռ մարդն իր ներկայությամբ պարսավում էր Քրիստոսին, կուսակրոններին անվանում ավանակներ, ասում էր, որ նրանք հիմարացնում են ժողովրդին, բացի դրանից, պնդում էր, իբր թե կա ոչ թե մի արեգակ, ինչպես ասված է Աստվածաշնչում, այլ անթիվ-անհամար արևներ և այլն, և այլն: Եվ հիմա ինքը, այդ մարդուն փակել է ձեղնահարկում և խնդրում է որքան կարելի է շուտ պահակախումբ ուղարկել՝ նրան տանելու համար: Եվ իրոք, կիրակի գիշերը պահակախումբը եկավ ու գիտնականին տարավ ինկվիզիցիայի բանտը:

Այդ բանը տեղի ունեցավ 1592 թվականի մայիսի 25-ին:

Ութ տարի տևեց այդ ահավոր դատավարությունը, և Բրունոն արիաբար պայքարեց իր կյանքի համար, սակայն ամենակատաղին այն պայքարն էր, որ նա առաջին տարին մղեց Վենետիկում՝ իրեն Հռոմին հանձնելու դեմ:

Այդ ժամանակին է վերաբերում նաև նրա թիկնոցի պատմությունը: 1592 թվականի ձմռանը, դեռևս ապրելով հյուրանոցում, նա իր համար տաք թիկնոց կարել տվեց դերձակ Գաբրիել Ցունտոյի մոտ: Երբ Բրունոյին ձերբակալեցին, նա դեռևս թիկնոցի համար չէր վճարել:

Պատվիրատուի ձերբակալման լուրն առնելով՝ դերձակը նետվեց դեպի պարոն Մոչենիգոյի տունը, որպեսզի ներկայացնի իր հաշիվը: Բայց արդեն ուշ էր: Դերձակը վերադարձավ տուն և կնոջը ոչինչ չասաց իր անհաջողության մասին:

Սակայն հունիսի մեկին, հաշիվներն արտագրելիս, կինը նկատեց, որ մի թիկնոցի դիմաց չի վճարված, և չի վճարել այն մարդը, որի անունը բոլորի շրթունքներին էր, քանզի նրա մասին ողջ քաղաքն էր խոսում: Ամենուրեք ամենաահավոր լուրեր էին տարածվում: Իբրև թե նա իր գրքերում ոչ միայն վատաբանում էր ամուսնական խորհուրդը, այլև իրեն՝ Քրիստոսին, խաբեբա էր անվանում և արևի մասին աներևակայելի բաներ ասում:

Զարմանալի չէ, որ այդպիսի մարդը թիկնոցի համար չէր վճարել: Սակայն բարի կինը չէր ուզում վնասներ կրել: Նա զուգվեց տոնական հագուստներով ու գնաց սրբազան տրիբունալ, ուր զայրացած պահանջում էր, որպեսզի իրեն վերադարձնեն այն երեսուներկու սկուդոն, որ ձերբակալված հերետիկոսը պարտք էր վերցրել:

Աստիճանավորը, որի հետ նա խոսում էր, գրի առավ նրա գանգատն ու խոստացավ պարզել: Շուտով Յունոնն դատակոչ ստացավ և գնաց այդ ահավոր վայրը: Ի զարմանս ծերուկի, նրան չհարցաքննեցին, այլ միայն տեղեկացրին, որ երբ զբաղվեն բանտարկյալի դրամական գործերով, նկատի կառնվի նաև այդ պահանջը: Ի դեպ, աստիճանավորը հասկացրեց, որ հազիվ թե կարելի է հույս դնել նշանակալից գումարի վրա:

Ծերուկը երջանիկ էր, որ հեշտ ազատվեց, և միայն նվաստորեն շնորհակալություն էր հայտնում: Սակայն կինը չհանգստացավ: Նրանք մահուդը պարտքով էին վերցրել, իսկ վաճառականը երկար չի սպասի: Իր երեսուներկու սկուդոն ստանալու համար, եթե հարկ լինի, նա նույնիսկ Հռոմ կգնա, սրբազան պապի մոտ: «Խարույկի վրա հերետիկոսին թիկնոց հարկավոր չի»,— բղավում էր պառավը:

Նա իրենց գլխին եկած փորձանքի մասին պատմեց իր խոստովանահորը: Քահանան խորհուրդ տվեց պահանջել, որ գոնե թիկնոցը վերադարձնեն: Ուրախանալով, որ նույնիսկ եկեղեցին ստիպված է խոստովանել նրա պահանջների արդարացիությունը, պառավը հայտարարեց, որ թիկնոցով չի բավարարվի. նա երևի արդեն հագել է, բացի դրանից, թիկնոցը չափսով է կարված: Ինքն ուզում է կանխիկ դրամով ստանալ: Բայց քանի որ իր բուռն ձգտման մեջ նա ձայնը բարձրացրել էր, քահանան ուղղակի վռնդեց նրան: Այդ փոքր-ինչ խելքի բերեց պառավին, և մի քանի շաբաթ նա հանգստացավ:

Բայց սեպտեմբերին խոսք տարածվեց, որ Հռոմի մեծ ինկվիզիտորը պահանջում է Ջորդանո Բրունոյին հանձնել իր դատին:

Պառավն իրեն կորցրեց: Մի՞թե հերետիկոսին բաց կթողնեն Հռոմ, նախքան պարտքը վճարելը: Հենց այդ էր պակաս: Նոր-նոր էր նա այդ անհավատալի լուրը լսել, որ իսկույնևեթ, առանց նույնիսկ շրջազգեստը կարգին հագնելու, սլացավ դեպի սրբազան տրիբունալի շենքը:

Այս անգամ նա ընդունվեց ավելի կարևոր և, որքան էլ տարօրինակ լինի, ավելի պատրաստակամ մի աստիճանավորի կողմից, քան բոլոր նրանք, որոնց հետ գործ էր ունեցել: Այդ աստիճանավորը համարյա պառավի հասակակիցն էր և լսում էր նրա գանգատները ուշադիր ու հանգիստ: Երբ պառավը վերջացրեց, նա կարճատև դադարից հետո հարցրեց, թե արդյոք չի՞ կամենում խոսել Բրունոյի հետ:

Պառավն իսկույն համաձայնեց: Տեսակցությունը նշանակվեց հաջորդ օրը: Մյուս օրը նեղ խցիկում, որի պատուհաններին վանդակաձողեր կային, պառավին հանդիպեց սև, ցանցառ մորուք ունեցող փոքրիկ ու նիհար մի մարդ և քաղաքավարությամբ հարցրեց, թե ինչ է կամենում:

Պառավը խոսեց անճապարանքով.

— Թիկնոցը: Ախր դուք նրա դիմաց չե՞ք վճարել:

Մի քանի վայրկյան մարդը զարմանքով նայում էր նրան: Հետո հիշեց ու հարցրեց մեղմ ձայնով.

— Որքա՞ն եմ ձեզ պարտք:

— Երեսուներկու սկուդո,— ասաց պառավը,— չէ՞ որ դուք հաշիվն ստացել եք:

Մարդը շուռ եկավ դեպի հաստ, բարձրահասակ աստիճանավորը, որը տեսակցությանը ներկա էր, ու հարցրեց՝ արդյոք նրան հայտնի չէ, թե իր իրերի հետ միա-



սին ինչքա՞ն փող է հանձնվել սրբազան դատաստանատուն: Նա չգիտեր, բայց խոստացավ պարզել:

— Ինչպե՞ս է ձեր ամուսինը,— հարցրեց բանտարկյալը, նորից դիմելով պառավին, ասես գործն արդեն կարգավորված էր ու այժմ ուժի մեջ էին մտնում հյուրընկալի նորմալ հարաբերությունները հյուրի հետ:

Շփոթվելով այդ թուլակազմ մարդու սիրալիրությունից, պառավը քրթմնջաց, որ ամեն ինչ կարգին է: Ամուսինն առողջ է, ասաց նա և նույնիսկ ինչ-որ բան ավելացրեց նրա հոդացավի մասին:

Գտնելով, որ պարկեշտությունը պահանջում է պատվիրատուին ժամանակ տալ հարցը պարզելու, պառավը երկու օր հետո միայն նորից գնաց սրբազան տրիբունալ:

Եվ իրոք, նրան մեկ անգամ ևս թույլատրեցին խոսել Բրունոյի հետ, որը խիստ նվազ ձայնով ասաց, թե դժբախտաբար թիկնոցի համար չի կարող վճարել: Իր իրերի մեջ փող չի գտնվել: Բայց դեռ ամեն ինչ կորած չէ. փոքր-ինչ միտք անելով, նա հիշեց, որ մի մարդ, որը Ֆրանկֆուրտ քաղաքում հրապարակում էր իր գրքերը, իրեն դեռ փող է պարտք: Կգրի Ֆրանկֆուրտ, եթե միայն թույլ տան: Հենց վաղը կխնդրի այդ մասին: Այսօր հարցաքննության ժամանակ տրամադրությունն այնքան էլ բարենպաստ չթվաց իրեն, և ինքը չխնդրեց, որպեսզի գործը չփչացնի:

Մինչ նա խոսում էր, պառավն իր սուր թափանցող հայացքով ծակում էր նրան: Նրան ծանոթ էին



անճշտապահ պարտապանների պատրվակները: Նրանք իրենց պարտավորություններին գրոշի արժեք չեն տալիս, իսկ երբ պատին ես դեմ անում, այնպես են ձևացնում, թե պատրաստ են երկինք-գետին տակնուվրա անելու:

— Թե որ չէիք կարող վճարել, հապա ինչո՞ւ էիք թիկնոց պատվիրում,— խստորեն հարցրեց նա:

— Ես միշտ էլ բավականաչափ վաստակել եմ գրքեր գրելով ու ուսուցչությամբ և կարծում էի, թե հետո էլ կվաստակեմ: Իսկ թիկնոցը հարկավոր էր ինձ, չէ՞ որ ես չէի պատրաստվում բանտ նստել:

Նա այդ ասաց առանց մի կաթիլ դառնության, պարզապես նրան պատասխանելու համար:

Զայրացած պառավը ոտից գլուխ չափեց կալանավորին, սակայն ինչ-որ բան ետ պահեց նրան նոր հարձակումներից: Առանց մի խոսք ասելու, նա դուրս փախավ խցից:

— Ո՞վ փող կուղարկի մի մարդու, որին հետապնդում է ինկվիզիցիան,— երեկոյան բարկացած ասաց նա ամուսնուն:

Հետևյալ ամիսները ոչ մի նորություն չմտցրին այդ անախորժ գործի մեջ: Հունվարի սկզբին հայտնի դարձավ, որ Սինյորիան հակամետ է կատարելու պապի ցանկությունը և հանձնելու հերետիկոսին: Եվ այնժամ Ցունտո ամուսինները նոր հրավեր ստացան՝ անցնելու սրբազան ատյան:

Քանի որ ճիշտ օրը չէր նշված, պառավը Ցունտոն մի անգամ ատյան գնաց օրվա վերջին: Նա տեղ հասավ խիստ աննժամանակ: Կալանավորն սպասում էր հանրապետության դատախազին, որին Սինյորիան հանձնարարել էր Բրունոյին Հռոմին հանձնելու խնդրի եզրակացությունը պատրաստել:

Նրան ընդունեց այն նույն կարևոր աստիճանավորը: Ծերունին ասաց, որ բանտարկյալը ցանկություն է հայտնել խոսելու նրա հետ, բայց արդյոք, ավելի լավ չէ՞ տեսակցությունը հետաձգել ուրիշ անգամվա: Բանտարկյալին այժմ հույժ կարևոր խոսակցություն է սպասում:

Պառավը կարճ պատասխանեց, որ այդ մասին ավելի լավ է նրան հարցնել:

Ծառայողներից մեկը գնաց ու վերադարձավ կալանավորի հետ: Խոսակցությունը տեղի ունեցավ կարևոր աստիճանավորի ներկայությամբ: Նախքան նրանցից մի խոսք կասեր, պառավը բացականչեց.

— Թե որ դուք չէիք պատրաստվում բանտ նստել, հապա ինչո՞ւ այդպես վարվեցիք:

Փոքրիկ մարդը մի ակնթարթ թվաց շփոթված: Այդ երեք ամիսների ընթացքում այնքան հարցերի էր պատասխանել, որ հազիվ թե դերձակի կնոջ հետ վերջին խոսակցությունը մնացած լիներ նրա հիշողության մեջ:

— Ես փող չեմ ստացել,— վերջապես ասաց նա,— երկու անգամ գրել եմ, բայց փող չեմ ստացել: Մտածում էի՝ միգուցե թիկնո՞ցը ետ վերցնեք:

— Գիտեի, որ այդպես էլ կվերջանա,— արհամարանքով ասաց պառավը:— Թիկնոցը կարված է ձեր վրայով և ուրիշի համար շատ փոքր կլինի:

Ջորդանո Բրունոն նայեց պառավին տառապյալի հայացքով:

— Ես այդ մասին չէի մտածել,— պատասխանեց նա ու շուռ եկավ դեպի կուսակրոնը:

— Արդյոք չի՞ կարելի վաճառել իմ ունեցվածքը, և դրամը տալ այս մարդկանց:

— Այդ անկարելի է,— խոսակցությանը միջամտեց նրան բերող լիքը-լիքը բարձրահասակ աստիճանավորը:— Ձեր ունեցվածքի նկատմամբ պահանջ ունի սինյոր Մոչենիգոն: Դուք երկար եք ապրել նրա միջոցներով:

— Ես նրա մոտ ապրել եմ իր հրավերով,— հոգնած պատասխանեց Բրունոն:

Ծերունին բարձրացրեց ձեռքը:

— Դա գործին չի վերաբերում: Ես կարծում եմ, որ պետք է թիկնոցը վերադարձնել:

— Իսկ թիկնոցը մեր ինչի՞ն է հարկավոր,— համառորեն առարկեց պառավը:

Ծերունու դեմքը թեթևակի կարմրեց: Նա դանդաղորեն ասաց.

— Սիրելի կինարմատ, իսկապես չէր խանգարի, որ դուք փոքր-ինչ քրիստոնեական ներողամտություն ունենայիք: Մեղադրյալն սպասում է մի խոսակցության, որը նրա համար կենաց ու մահու խնդիր է: Հա-



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

զիվ թե դուք իրավունք ունենաք պահանջելու, որ նա առանձնապես հետաքրքրվի ձեր թիկնոցով:

Պառավն անվստահորեն նայեց նրան: Հանկարծ նա հիշեց, թե որտեղ է գտնվում: Արդեն մտածում էր, թե ավելի լավ չի՞ հեռանալ, երբ հանկարծ ետևից լսեց կալանավորի մեղմ ձայնը.

— Ես գտնում եմ, որ նա իրավունք ունի պահանջելու այդ գումարը: —Եվ երբ պառավը դարձավ նրա կողմը, նա ավելացրեց.— Դուք պետք է ներեք ինձ պատահածի համար: Չկարծեք, թե ձեր վնասն ինձ համար միևնույն է: Ես այդ մասին կհայտարարեմ դատավարության ընթացքում:

Բարձրահասակ հաստլիկը ծերունու նշանով հեռացել էր սենյակից: Այժմ նա վերադարձավ և, ձեռքերը աջ ու ձախ տարածելով, ասաց.

— Թիկնոցն ընդհանրապես մեզ մոտ չի բերված: Հավանորեն Մոչենիգոն պահել է:

Բրունոն ասաց վճռականորեն.

— Այդ անարդարացի է: Ես կգանգատվեմ:

Ծերունին օրորեց գլուխը.

— Ավելի լավ է մտածեք այն խոսակցության մասին, որն սպասում է ձեզ մի քանի րոպեից հետո: Ես այլևս չեմ կարող թույլ տալ, որ այստեղ հակաճառեն ինչ-որ չնչին սկուդոների համար:

Արյունը պառավի դեմքին խփեց:

Մինչ նույացին կխոսեր, նա լուռ, շրթունքները ծամելով, նայում էր դեպի սենյակի անկյունը: Բայց այժմ նորից համբերությունը կորցրեց.

— Դժբախտ սկուդոնե՛ր,— ծղրտաց նա:— Դա մեր ամսական վաստակն է: Ձեզ համար հեշտ է ներողամիտ լինել: Չէ՞ որ դուք ոչինչ չեք կորցնում:

Այդ րոպեին շեմքին երևաց բարձրահասակ մի կուսակրոն:

— Պրոկուրատորը եկավ,— ասաց նա կիսաձայն, զարմանքով նայելով բղավող պառավին:

Հաստլիկը բռնեց նոլացու թևից ու նրան դուրս տարավ: Մինչև շեմքին հասնելը կալանավորը իր նեղ ուսի վրայով շարունակում էր նայել կնոջը: Նրա նիհար դեմքը խիստ գունատ էր:

Պառավը շփոթահար իջավ քարե աստիճաններով: Նա չգիտեր ինչ մտածի: Վերջ ի վերջո այդ մարդն արավ այն ամենը, ինչ կարող էր:

Երբ մեկ շաբաթ հետո հաստլիկ կուսակրոնը թիկնոցը բերեց, պառավը ներս չմտավ արհեստանոց: Բայց նա կանգնած էր դռան մոտ ու լսեց, թե ինչպես կրոնավորն ասաց.

— Վերջին ժամանակներս կալանավորն իսկապես հուզվում էր թիկնոցի համար: Երկու անգամ նա հայտարարություն արեց այդ մասին: Մոչենիգոն ստիպված էր թիկնոցը վերադարձնել: Չնայած, ճշմարիտն ասած, թիկնոցն այժմ շատ ու շատ հարկավոր կլիներ իրեն՝ կալանավորին. հանձնման հարցը լուծված է, և հենց այս շաբաթ նրան կտանեն Հռոմ:

Եվ իսկապես, հունվարի վերջերն էին:

Թարգմ. ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆԻ



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ՀԱՎԱՔԸ




Դա տեղի ունեցավ մի քանի ամիս առաջ: Երևանի «Խարույկ» քաղաքային ակումբի անդամները հանգիստ չունեին: Նրանք նամակներ էին գրում, գնում էին անծանոթ հասցեներով, նորանոր անուններ էին գտնում, կազմում ցուցակներ, պատրաստում հրավիրատոմսեր:

Եկավ հավաքի օրը: Պիոներական շարասյուները մայրաքաղաքի փողոցներով ձգվեցին դեպի 26 կոմիսարների շրջանի մանկական այգին: Հսկայական քարաբեկորը, որի մոտ հավաքվել էին պիոներները, հյուրերը, նախկին պատկոմականները, ծածկված էր սպիտակ շղարշով:

Հավաքի մասնակիցներից շատերը տարիների բաժանումից հետո նորից հանդիպել էին, հիշել մանկության օրերը: Նախկին պատկոմական հրահանգիչները, բազմավարները, դրուժինայի շտաբի պետերը, դրուժինայի խորհրդի նախագահները լուռ սեղմում էին միմյանց ձեռք ու հետևում պիոներական նոր սերնդին, նրա գործերին:

Հնչեց երաժշտությունը: Դանդաղ ետ քաշվեց սպիտակ շղարշը: Անանուն քարաբեկորը բոլորի ներկայությամբ դարձավ ապագա հուշարձանի հիմքը:

«Այստեղ կառուցվելու է Հայրենական մեծ պատերազմում հերոսաբար զոհված պիոներական դրուժինաների խորհուրդների նախագահների հիշատակը հավերժացնող աղբյուր-հուշարձան: Մայիս, 1968 թ.»,— փորագրված էր քարաբեկորի հղկված մակերեսին:

Հավաքը շարունակվեց մի քանի օր: Վերջին օրը բոլորը հավաքվեցին Սունդուկյանի անվան պետական ակադեմիական թատրոնի դահլիճում:

Բեմում վառվում է խարույկը: Շուրջը նստած են առաջին պատկոմականների համազգեստներով պիոներները: Հին օրերի ոգևորող երաժշտությունը հնչում է նաև հիմա: 20-ական թվականների պիոներների սիրած երգը՝ «Խարույկով խարկվենք», թևածում է դահլիճում:

Եվ պատմության ընթացքը, սկսած 1921 թվականի հուլիսի 1-ից, երբ ծնունդ առավ Հայաստանի պատկոմական կազմակերպությունը, հանդիսատեսները նորից տեսան Սունդուկյանի անվան թատրոնի բեմում:

Խարույկի բոցը լուսավորում է գրանիտե պատվանդանը, որի վրա խրոխտ կանգնել է Պավլիկ Մորոզովը: Երևում է Գրիշա Հակոբյանը... Հետո բեմ են մտնում Վալենտին Կոտիկը, Զոյա Կոսմոդեմյանսկայան: Դահլիճի կամարների տակ տարածվում են Հունան Ավետիսյանի, Մարսել Մարտիրոսյանի, Սերգեյ Բունաղյանի, Նելսոն Ստեփանյանի անունները:

Հնչում է «Բուխենվալդյան ահազանգը»: Խոնարհվում են դրոշները, հավաքի մասնակիցները ոտքի են կանգնում ու խոր լռությամբ հարգում Հայրենական մեծ պատերազմում զոհված հերոսների հիշատակը:

Հին պատկոմականների, դահլիճում հավաքված տարեց մարդկանց անունից հավաքի մասնակիցներին ողջունում է հանրապետության կենցաղ-սպասարկման մինիստր Գեղամ Ալեքյանը: Նա «Խարույկ» ակումբին նվիրում է կարմիր, ալեծածան դրոշ:

— Լսեցե՛ք 20-րդ դարի պատանի լենինյանների նամակ-ուղերձը՝ գալիքի սերունդներին,— հնչում է հաղորդավարի ձայնը:

— Լսեցեք, պատանի կոմունարների կոլեկտիվների, գործկոմի նախագահների, պիոներական բազաների և դրուժինաների խորհուրդների նախագահների թոռներ ու ծոռներ: Ձեզ հետ խոսում են 20-րդ դարի ձեր հասակակիցները, լենինյան կոմերիտմիության 50-ամյակին նվիրված հավաքի մասնակից պատանի լենինյանները:

Դուք հիմա շրջում եք մայրաքաղաքի զովաշունչ այգիներում, ծառուղիներում, պուրակներում, որոնք լցված են մանուկների խնդով ու ծիծաղով: Դուք հիանում եք Լենինի հրապարակում թևածող աղավ-



նիների երամներով: Իմացեք, դա մեր աշխատանքի արդյունքն է, մեր սերն ու նվիրվածությունը դեպի հարազատ Երևանը, որի 2750-ամյակը այս տարի հանդիսավորությամբ տոնեցինք:

Հիշեցեք, ուսումնասիրեցեք և բազմապատկեք մեր ռոմանտիկ ավանդները, մեր գեղեցիկ, հրապուրիչ և հայրենանվեր գործերը:

Երևանում մենք հիմնադրեցինք Հայրենական մեծ պատերազմում զոհված հերոսներին նվիրված աղբյուր-հուշարձան: Ամեն անգամ, երբ ջուր կխմեք այդ աղբյուրից, հիշեցեք մեր հայրենիքի ազատության և անկախության համար զոհված մարտիկներին:

Լսեցեք, թանկագին բարեկամներ: Ձեզ նվեր ենք թողնում Սևանի ափին կառուցվող «Արեվիկ» պիոներական ճամբարը:

Հիսուն տարի հետո՝ 2018 թվականին լրանում է լենինյան կոմերիտմիության 100-ամյակը: Սրտանց ողջունում ենք ձեզ այդ նշանավոր հոբելյանի առթիվ, սիրելի հասակակիցներ: Թող այդ օրերին էլ հնչի մեր պիոներական երգը.

«Պատրաստ, որ անցնես դու
կյանքի ճանապարհը
Ինչպես կոմունիստն անվեհեր,
Սովորի՛ր, աշխատի՛ր դու, սիրիր
հայրենիքը,
Սովետական երկրի պիոներ»:

Նամակ-ուղերձը տրվում է հին պատկոմական Երվանդ Խալեյանին, հանձնելու հեղափոխության թանգարանին՝ ի պահ:

Հնչում են շեփորները, խըփում են թմրուկները: Դրոշակակիրները շարժվում են դեպի դահլիճի ելքը: Լենինյան կոմերիտմիության 50-ամյակին նվիրված հավաքն ավարտված է:

**ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ**




# ԱԼՊՅԱՆ ՏՐԻՏՈՆ

*1760 թվականին իտալացի կենսաբան Լաձարո Սպալանցանին մի հետաքրքիր փորձ կատարեց: Փորձի առարկան՝ տրիտոնը (երկկենցաղ, պոչավոր մողեսանման կենդանի) պառկած էր վիրահատության սեղանին:*

*Զինվելով լանցետով և վիրաբուժական գործիքներով, Սպալանցանին անդամահատեց տրիտոնի վերջավորությունները և աչքերի խնձորակները: Սակայն շատ չանցած հրաշք կատարվեց: Ի մեծ բավականություն գիտնականի, տրիտոնն ընդունեց իր նախկին տեսքը: Աճեցին ոչ միայն վերջավորությունները, այլև ձևավորվեցին աչքերի խնձորակները:*

*Հետագայում մի ուրիշ գիտնական այն աստիճան սառեցրեց տրիտոնին, որ կենդանին, անկասկած պետք է ոչնչանար, որից հետո, իհարկե, նորից կենդանացրեց նրան: Ուստի և զարմանալի չէ, որ տրիտոնները բնակվում են Ալպյան լեռների սառչող ջրերում:*

*Տրիտոնները բնակվում են նաև Եվրոպայում, Ասիայում և Հյուսիսային Ամերիկայում: Սովետական Միությունում նրանք բնակվում են Ղրիմում, Կովկասում և Արևմտյան Սիբիրում:*

*Կյանքի սկզբնական մասը տրիտոնն անցկացնում է ջրում: Այդ ժամանակ նա շնչում է խռիկներով: Երբ նրա թոքերը լրիվ զարգանում են, տրիտոնը դուրս է գալիս ջրից և երկու-երեք տարի ապրում ցամաքում՝ լրիվ մոռանալով ջրի մասին: Այդ ժամանակ նրան կոչում են «Կարմիր»՝ մաշկի կարմրության համար: Իսկ երբ անցնում է բազմանալու շրջանը, ծերացած տրիտոնը նորից վերադառնում է դեպի ջուրը և ապրում է այնտեղ մինչև իր կյանքի վերջը: Նրա մաշկի գույնը փոխվում է, դառնում է ձիթա-կանաչ:*



*Տրիտոններն օգտակար կենդանիներ են: Նրանք սնվում են միջատներով:*

## ԱՄԵՆԱՄԵԾ ԲՈՒՐԳԸ

*Մեքսիկայի մայրաքաղաք Մեխիկոյից հարյուր կիլոմետր հեռու, Չոլուլա վայրում գիտնականները հայտնաբերել են մի վիթխարի բուրգ, որը նախնական չափումներով կարելի է համարել աշխարհի ամենամեծ բուրգը: Չոլուլայի բուրգի բարձրությունը 60 մետր է, իսկ հիմքի յուրաքանչյուր կողմը հավասար է 300 մետրի:*

*Եգիպտական Գիզեի մեծ բուրգը, որի բարձրությունը 137 մետր է, հիմքում զգալիորեն զիջում է Չոլուլայի բուրգին. Նրա հիմքի յուրաքանչյուր կողմի երկարությունը 220 մետր է:*

## ՍՏՈՐՋՐՅԱ ՔԱՂԱՔ

... 1954 թվականի ամռանը Բերմուդյան կղզիներին մոտեցան մի քանի նավեր: Դրանցից մեկի տախտակամածի վրա դրված էր 2,5 տոննա կշիռ ունեցող պողպատե մի գունդ, որի շուրջը խմբվել էին շատ մարդիկ: Նրանք ամերիկյան կենդանաբան Վիլյամ Բիբի արշավախմբի անդամներն էին, որոնք պատրաստվել էին ջրի խորքերն իջեցնելու մի ապարատ, որը բատիսֆերա էր կոչվում: Եվ ահա պողպատե ճոպանը լարվում է և գունդն անհետանում է ջրի մեջ: Բատիսֆերան, որի մեջ գտնվում էին Բիբը և Բարտոնը, կանգ առավ 923 մետր խորության վրա: Այստեղ բատիսֆերայի մակերեսի ամեն մի քառակուսի սանտիմետրի վրա ջուրը ճնշում էր 94, 6 կգ. ուժով և հետևաբար ընդհանուր ճնշումը հասավ 7016 տոննայի:

1949 թվականին Բարտոնը իր նախորդ ռեկորդը գերազանցեց 452 մետրով: Մարդու կողմից արդեն նվաճված էր 1375 մետրի հասնող խորություն: Սակայն բատիսֆերաներով հնարավոր էլ չէր ավելին անել, քանի որ 1 կմ-ից ավելի երկարություն ունեցող պողպատե ճոպանները իրենց սեփական ծանրության տակ էլ կտրվում են:

Գիտնականների առաջ ծառացավ նոր խնդիր: Ստեղծել մի այնպիսի ապարատ, որը ջրի խորքերն իջնի առանց պողպատե ճոպանի օգնության: 1949 թվականին բելգիացի պրոֆեսոր Օգյուստ Պիկարը ստեղծեց մի նոր ապարատ՝ բատիսկաֆ, որն ուներ 2 էլեկտրոմոտոր և թիավարման պտուտակ: Դրանց օգնությամբ բատիսկաֆը ոչ միայն կարող էր իջնել ու բարձրանալ, այլև շարժվել հորիզոնական ուղղությամբ: 8 տարի անց նույն



գիտնականի ղեկավարությամբ կառուցվեց «Տրիեստ» բատիսկաֆը: Հենց դրանով էլ Պիկարն ու իր որդի Ժակը Տիրենյան ծովում գրոհեցին 3150 մ. խորությունը:

1959 թ. «Տրիեստը» խարիսխ գցեց 5489 մ. խորության վրա, իսկ հաջորդ տարի Պիկարը Մարիանյան իջվածքում գրանցեց 10919 մ. խորություն:

Բատիսկաֆներն անգնահատելի ծառայություններ են մատուցում ստորջրյա կյանքն ուսումնասիրելու ուղղությամբ:

1962 թվականին ստորջրյա աշխարհի հայտնի հետազոտող ֆրանսիացի Ժակ Իվ Կուստոն կատարեց մի հետաքրքիր գիտական փորձ: Նա Տիրենյան ծովի հյուսիսում՝ Մարսելի մոտ, հատակ իջեցրեց երկաթուղային ցիստեռն հիշեցնող «Դիոգեն» տունը, որի մեջ գտնվում էին 2 հոգի: Նրանք մի ամբողջ շաբաթ մնացին ծովի հատակում և շատ արժեքավոր ուսումնասիրություններ կատարեցին: Նրանց թթվածին էին մատակարարում վերևից՝ օվկիանոսային նավից: Այժմ Կուստոն աշխատում է մի հետաքրքիր նախագծի վրա: Նա ուզում է ստեղծել ստորջրյա մի փոքրիկ քաղաք, որը ոչ մի կապ չի ունենալու արտաքին աշխարհի հետ: Քաղաքը կունենա իր միջուկային ոչ մեծ էլեկտրակայանը, որի էներգիան հիմնականում կծառայի շնչառության համար ջրից անհրաժեշտ գազեր ստանալուն: Ավանում կկառուցվեն բոլոր հարմարություններով օժտված տներ: Գիտական արշավախումբը մեծ աշխատանք կտանի օգտակար հանածոների հետազոտման և հանքահորեր կառուցելու ասպարեզում:

## ԿԱՊԻԿԸ ՕԳՆՈՒՄ Է ՄԱՐԴՈՒՆ

*Մալազիայում կապիկներին սովորեցնում են կոկոս հավաքել: Մակակ-կապիկը հեշտությամբ բարձրանում է կոկոսի ծառը, որը մոտ քսանհինգ մետր բարձրությամբ, հարթ և ուղղաձիգ բուն ունի: Նա պոկում և ցած է գցում բոլոր կոկոսները, հետո իջնում է ծառից, նստում տիրոջ հեծանվի ետևի մասում և նրանք միասին գնում են դեպի մյուս արմավենին: Մեկ օրվա ընթացքում մակակ-կապիկը կարող է տասը արմավենու պտուղները քաղել: Այսպիսի «աշխատողը» շատ ձեռնտու է, ուստի և լավ վարժեցված մակակ-կապիկը բավական թանկ արժե:*



## ԹԵ ԻՆՉՈՒ Է ՆԱՊԱՍՏԱԿԸ ՇԼԴԻԿ

Ինչո՞ւ են նապաստակի աչքերը շլդիկ: Թերևս, նրա տեսողությո՞ւնն է թույլ: Ո՛չ, ընդհակառակը, նա լավ տեսողություն ունի:

Նապաստակի աչքերը տեղավորված են ոչ թե դեմքի առջևի մասում, այլ՝ երկու կողմերում, ուստի և նրանց տեսադաշտը շատ մեծ է: Իսկ նապաստակի համար, որի շուրջը վխտում են թշնամիները, դա չափազանց անհրաժեշտ է:

## ԱՎԱԶՈՎ ԿՐԻԱՆԵՐ ԵՆ ՈՐՍՈՒՄ

Լուսաբացին, երբ ծովափի ավազը դեռ խոնավ է, հազարավոր բներից, որտեղ իրենց ձվերն են դրել ծովային կրիաները, դուրս են գալիս ձվից հենց նոր ելած ճստլիկ կրիաները: Բնազդաբար, նրանք շտապում են դեպի ծովը:

Եվ հանկարծ, խուչընդոտ՝ չոր ավազի մի շերտ: Փոքրիկ կրիաները դես են ընկնում, դեն են ընկնում, բայց չոր ավազը նրանց չի թողնում գնալ դեպի օվկիանոս, իսկ մարդիկ հավաքում են նրանց մեծ զամբյուղների մեջ: Անտիլյան կղզիների Սենտ-Վինսենտ կղզու բնակիչների համար կրիաները ոչ թե համեղ պատառ են, այլ հացը ամենօրյա:

## ԱՇԽԱՐՀԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԳԻՐՔԸ

Ռումինիայում, Տերտերիա կոչվող վայրում հնագիտական պեղումների ժամանակ հայտնաբերվեցին երեք ոչ մեծ կավե աղյուսիկներ:

Աղյուսիկներից մեկի վրա պատկերված է այծյամի ուրվապատկեր, ծառ և մարդու ֆիգուր, իսկ մյուսի վրայի նշանները հիերոգլիֆներ են հիշեցնում:

Երրորդի վրայի նշանները հիշեցնում են այսպես կոչված «պատկերագրեր»՝ նետ ու աղեղ, ատամնազարդ, ծառի ճյուղեր...

Ինչպես ցույց տվեցին հետազոտությունները, այդ աղյուսիկները ստեղծված են վեց հազար տարի առաջ: Դա նշանակում է, որ նրանք 1500 տարով հին են, քան հայտնի շումերական գրերը:

## ՋԱԽՈՐԴ ՁԿՆՈՐՍԸ

Համբերատար անգլիացի Ջերվիսը չէր դժգոհի, եթե ինքն էլ մյուս ձկնորսների նման միայն ձուկ բռներ: Սակայն բախտն ամեն անգամ մի նոր խաղ է



խաղում նրա գլխին: Մեկ նրա ուռկանում հնագարյան դրամ է ընկնում, մեկ որևէ տարօրինակ շիշ: Իսկ մի անգամ նա դուրս քաշեց մամոնտի ատամ: Ջախորդ ձկնորսը, որին այդ օրը դարձյալ չէր հաջողվում ձուկ բռնել, ատամը նորից ջուրը նետեց, նախօրոք նրա վրա խազմզելով իր անունը: Դա տասներկու տարի առաջ էր:

Վերջերս ուռկանը Ջերվիսին կրկին մի տարօրինակ առարկա պարգևեց: Երբ նա այն մաքրեց խեցիներից, զարմանքով տեսավ, որ դա իրեն շատ լավ ծանոթ ատամն է:

Իսկ ձուկ առաջվա նման չի բռնվում...

## 10 ՕՐ ԱՌԱՆՑ ՋՐԻ

Պարզվում է, որ ջայլամները առանց ջրի կարող են ապրել 10 օր: Այդ ընթացքում նրանք ծախսում են իրենց օրգանիզմում եղած ջրի պաշարները: Ընդ որում, նրանք հազիվհազ նիհարում են:

Ջայլամը, որը ինն օր առանց ջրի է մնացել, կարող է մի շնչում խմել այնքան ջուր, որը լիովին վերականգնում է նրա սկզբնական քաշը:

Միաժամանակ պարզվել է, թե ինչու են ջայլամները կարողանում աղի ջուր խմել: Կտուցի մեջ տեղավորված հատուկ գեղձերը չեզոքացնում են աղը:



## ԱՆՍՈՎՈՐ ԹԱՆԳԱՐԱՆ

Շվեյցարիայի Նշատելյան լճից ոչ հեռու գըտնըվում է Լյուսան ավանը։ Այստեղ՝ զառիթափ բլրի վրա բարձրանում է միջնադարյան մի մռայլ դղյակ, որն իր գոյության 7 հարյուրամյակների ընթացքում շատ ճակատամարտեր, գյուղացիական ապստամբություններ ու դավաճանություններ է տեսել։

Այժմ այդ դղյակը պատկանում է անգլիացի հռչակավոր գրող Արթուր Կոնան-Դոյլի որդի Ադրիան Կոնան-Դոյլին։

Ադրիանը խնամքով ու մեծ բծախնդրությամբ այստեղ է հավաքել այն բոլորը, ինչը վերաբերվում է իր հոր կյանքին և ստեղծագործությանը։ Թանգարանի սրահներից մեկում տեղ են գտել աշխարհի բոլոր լեզուներով թարգմանված Արթուր Կոնան-Դոյլի գրքերը։ Պահպանվում են հոր գրած բազմաթիվ նամակները, անձնական իրերը, ճաշի այն սեղանը, որի շուրջը նստել են Ջարլզ Դիկկենսը, Վալտեր Սկոտը, Բեռնարդ Շոուն և ուրիշներ։ Բայց գլխավորը Կոնան-Դոյլի թանգարանում իհարկե «Շեռլոկ Հոլմսի սրահն է։ Նրանում հավաքված են նշանավոր հետախույզի մասին գրված գրքերի ձեռագրերը և տպագրական առաջին շարվածքները, ինչպես նաև ատրճանակներ, դաշույններ, լախտեր, թույնի տեսակներ և այլն։ Մի անկյունն էլ նվիրված է «Բասկերվիլյան շանը»։ Արթուր Կոնան-Դոյլը այնպիսի համոզվածությամբ էր գրում իր հերոսի մասին, որ այն ժամանակ շատ շատերն էին հավատում նրա գոյությանը։

Այդ մասին են վկայում «Միստեր Շեռլոկ Հոլմսին» ուղղված նամակները, որով խնդրում են հետազոտել տեղի ունեցած հանցագործությունը կամ հանելուկային դեպքը։ Ահա և այն դուռը, որի վրա գրված է «Բեկեր-ստրիտ 221»։ Այցելուն, սանդուղքներով վեր բարձրանալով, մտնում է սեղանի մեծ լամպով լուսավորված Շեռլոկ Հոլմսի սենյակը։ Թվում է, թե քիչ առաջ նա այստեղ է եղել և շտապ դուրս է եկել ինչ-որ կարևոր գործով, որովհետև սեղանին դեռ մնում է թեյի կիսատ բաժակը։ Այստեղ կա այն ամենը, ինչ ծանոթ է գրքերից։ Ահա Շեռլոկ Հոլմսի և Ուոտսոնի ատրճանակները, ծեռքի լապտերները, նշանավոր խուզարկուի կիսանդրին։ Ու այցելուին թվում է, թե ահա ուր որ է նորից կթակեն դուռը ու կդիմեն միստեր Շեռլոկի օգնությանը։ Այնքա՜ն բնական է ստացվել ամեն ինչ։



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Ս., ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՈՒՐԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 56-32-72, 2-68-16, 56-14-96։

ՎՖ 06597։ Պատվեր՝ 1112։ Տպաքանակ՝ 53500։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5/IX. 1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.

# ԿԵՂԾ ՈՍԿԵԴՐԱՄՆԵՐԸ



Հին աշխարհի թագավորներից մեկն իր որդուն ուղարկեց մի իմաստասերի մոտ քերականություն և հաշվողական արվեստ սովորելու: Թագավորի որդին ջանասիրությամբ սովորեց ու խորամուխ եղավ գիտությունների մեջ: Այսպես անցավ հինգ տարի: Ուսումը վերջացավ, և նա վերադարձավ հոր պալատը:

Թագավորն իր մոտ հրավիրեց որդու ուսուցչին և ասաց.

— Ես իմ որդուն կառաջարկեմ մի հանելուկ-խնդիր: Եթե նա խնդիրը լուծի, ուրեմն ուսումը հաջող է անցել, որդիս ճարտար է հաշվողական արվեստի մեջ և ճկուն է նրա միտքը: Իսկ եթե նա չկարողանա այդ անել, դու պետք է շարունակես ուսուցանել նրան:

— Թող քո բարի կամքը միշտ կատարվի, — ասաց իմաստասերը:

Թագավորը հավաքեց պալատական գիտնականներին և նրանց ու իմաստասերի ներկայությամբ որդուն առաջարկեց հետևյալ խնդիրը.

— Ահա 10 արծաթե տուփ: Ամեն մի տուփի մեջ կա 10-ական ոսկեդրամ: Ամեն մի ոսկեդրամը կշռում է մեկ ունցիա (կշռի չափ է): Տուփերից մեկի մեջ եղած ոսկեդրամներն ավելի թեթև են, քան մյուսները: Նրանցից յուրաքանչյուրը ունցիայի մեկ տասներորդ մասով պակաս է կշռում: Այդ աննկատելի է: Կեղծ ոսկիները կարելի է գտնել կշռելով: Ահա քեզ կշեռք: Դրամները կարելի է միայն մեկ անգամ կշռել:

Պալատական գիտնականները սկսեցին մտածել: Իմաստասեր ուսուցիչը ժպտաց. նա վստահ էր իր սանի մտքի ճարտարության վրա:

Թագավորի որդին մտածեց, խորհեց և վերջապես գտավ հոր առաջարկած հանելուկ-խնդրի պատասխանը:

Ինչպե՞ս վարվեց թագավորի որդին:

ՍՈՒՐԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք

77806

## «ՊԻՈՆԵՐ» ԵՎ «ԾԻԾԵՌՆԱԿ» ԱՄՍԱԳՐԵՐԻՆ

ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵ՛Ր

Սկսվել է ձեր ամսագրերի՝ «Պիոների» և «Ծիծեռնակի» 1969 թվականի բաժանորդագրությունը։

1969 թվականին ձեր սիրելի ամսագրերը լույս կտեսնեն ավելի շքեղ և ավելի հարուստ բովանդակությամբ։ Ամսագրերի էջերում դուք կգտնեք հետաքրքիր պատմվածքներ ու հեքիաթներ, զրույցներ ու ակնարկներ, գունազարդ նկարներ ու գծագրեր։ Դուք կկարդաք ձեր պիոներական աշխատանքներին օգնող շատ նյութեր, ինչպես նաև նյութեր գիտության, տեխնիկայի և արվեստի նորությունների մասին։ Ամսագրերի էջերում տպագրված վերատպություններով դուք կհարստացնեք ձեր անձնական և դպրոցի կոլեկցիաները։

Երկու ամսագրերում էլ առատ նյութեր կտրվեն ձեր ժամանցը լավ անցկացնելու համար։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ «ՊԻՈՆԵՐ» ԵՎ «ԾԻԾԵՌՆԱԿ» ԱՄՍԱԳՐԵՐԻՆ։**




Բաժանորդագրության պայմաններն են՝

| «ՊԻՈՆԵՐ» | «ԾԻԾԵՌՆԱԿ» |
|---|---|
| 3 ամիսը — 30 կ. | 3 ամիսը — 30 կ. |
| 6 ամիսը — 60 կ. | 6 ամիսը — 60 կ. |
| մեկ տարին — 1 ռ. 20 կ. | մեկ տարին — 1 ռ. 20 կ. |

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ